# ՖԻԶԿՈՒԼՏՈՒՐՆԻԿՆԵՐԻ ԵՐԳԸ





Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ




Մենք կոփել ենք մարմինը մեր
Բարձրագագաթ լեռներում,
Ուր շաչում են շանթ ու հողմեր,
Արծիվներն են բույն դնում:

Շատ անգամ ենք ձմռան ցրտին
Մենք արշավի գնացել,
Արևի տակ ամռան շոգին
Պողպատի պես ամրացել:

Մենք ճեղքել ենք բազուկներով
Ծովի կուրծքը լայնարձակ,
Ու երկնքից պարաշյուտով
Իջել անվախ, համարձակ:




Երջանիկ ենք մենք անսահման
Ե՛վ առողջ ենք, և՛ հզոր,
Մեզ դարբնել է սովետական
Հայրենիքը փառավոր:

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ





Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ






№ 7

ՀՈՒԼԻՍ

1951 թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 23-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ


Դուք այս լուսանկարում տեսնում եք մեծ գրող Մաքսիմ Գորկուն պիոներների շրջապատում: Որքա՜ն գորովանք, որքա՜ն ջերմություն կա Ալեքսեյ Մաքսիմովիչի դեմքին, և ինչքա՜ն երջանկություն ու սեր՝ նրան շրջապատող պիոներների աչքերում: Մաքսիմ Գորկին մանուկների մեծ բարեկամն էր: Մեր Հայրենիքի բոլոր վայրերից հազարավոր նամակներ էին գրում նրան պիոներներն ու դպրոցականները: Ալեքսեյ Մաքսիմովիչը սիրով պատասխանում էր նրանց: Նույնիսկ ծանր հիվանդության օրերին, մինչև ուշ գիշեր նա կարդում էր մանուկների նամակները և իր իմաստուն խորհուրդներով օգնում էր նրանց, ոգևորում, խրախուսում: Մեծ գրողը Լենինի և Ստալինի բարեկամն էր և հավատարիմ զինակիցը: Նրա խոսքը արձագանք էր գտնում սովետական մարդկանց և ամբողջ աշխարհի աշխատավորների սրտերում: Գորկուց վախենում էին ժողովրդի թշնամիները: Այդ էր պատճառը, որ նրանք նենգորեն մահացրին մեր ժամանակի խոշորագույն գրողին: Սակայն մեծ գրողի խոսքը այժմ էլ կենդանի է և միշտ կհնչի աշխարհի խաղաղասեր մարդկության սրտում:

Հունիսի 18-ին լրացավ սովետական գրականության հիմնադիր Մաքսիմ Գորկու մահվան տասնհինգ տարին: Սովետական ժողովուրդը խորին հարգանքով նշեց այդ տարեթիվը:

# ՀԻՆ ՀԱՆՔԱԽՈՐՇՈՒՄ

Գ. ԱՐԵՎՅԱՆ

Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

1

Լեռան բարձունքին հենված Կավարտ գյուղի շուրջը բացվում են անծիր հորիզոններ։ Հեռվում ինչքա՜ն գյուղեր ու ավաններ, անտառներ ու դաշտեր են նշմարվում։ Հանքեր էլ կան այդտեղ։ Դրանց մի մասը լքված հանքեր են։ Նրանց ընդերքի հանածոն սպառվել է, իսկ մյուս մասը գործող հանքերն են։ Գիշեր-ցերեկ այնտեղ աշխատում են հանքափորները, հարստությունները լույս-աշխարհ հանում։

Լքված հանքերից շատերը երեսունհինգ տարի է, որ չեն գործում։ Այն օրերից, երբ ճողոպրել են օտարերկրյա գիշատիչները, այդ հանքերից շատերը լցվել են ջրով, մի մասն էլ անխնամ մնալու հետևանքով փլվել է, ավերվել։ Դրանց մուտքերը հըսկայական անձավների տպավորություն են թողնում։ Ձմռան ցրտին հանքափորների երեխաները իջնում են ձորը, մտնում այդ անձավներն ու խաղում։

Ահա, հենց հիմա էլ, այնտեղ են հավաքվել երեխաները, զրուցում են ու խաղում։ Նրանց ձայներն անձավներում ահեղ արձագանք են տալիս։

— Գնանք, Վազգե՛ն, տեսնենք այս հանքի խորքում ինչ կա,— ասաց Գուրգենը։

— Գնանք,— համաձայնեց Վազգենը։

Ու ներս գնացին։

Հազիվ մի քանի տասնյակ մետր անցան և կանգ առան. մութ էր։

— Սպասիր գնամ տուն, լապտեր բերեմ,— ասաց Վազգենը։

Քիչ անց նա անձավ մտավ լապտերը, ռետինե երկարաճիտ կոշիկները և հետախույզի մուրճիկը ձեռքին։

Նրանք առաջ գնացին։

Հանքի հատակը թաց էր, ցեխոտ։ Հանքուղու կողերը բորբոսով էր պատած, իսկ առաստաղից կախված տձև ապառները գունափոխվել էին ու գորշ-շագանակագույն դարձել։ Այստեղ-այնտեղ ընկած փայտերը խոնավության մեջ փտել էին։

Հասան առաջին հանքախորշը։ Առաստաղը ցածր էր, կուզեկուզ էին առաջ գընում. ուղիղ կանգնած քայլել հնարավոր չէր։ Կարբիդե լապտերի լույսի տակ ամեն ինչ գորշ էր երևում։ Մուրճիկով ապառին հարվածեցին։ Քարի մի քանի մանրիկ կըտորներ թռան, տակը միայն գորշ կվարց էր։ Պղնձի հետք չէր երևում։

— Երևի պղնձահանքի երակը վերջացել է հենց այստեղ,— խոսեց Գուրգենը։

— Բոլոր հանքախորշերը ստուգենք՝ տեսնենք...

Մտան հարևան հանքախորշերը։ Ոչ մի ապառի մեջ պղնձային մասի հետք չէր նշմարվում։ Հոգնել էին, նստեցին քարին հանգստանալու։

— Հայրս պատմում է, որ մինչև ֆրանսիացի հանքատերերի փախչելը, այս հանքը գործելիս է եղել։

— Իսկ իմ հայրն ասում է, որ սրա երակները սպառվել են։

— Բայց մի տեղ մի բան մնացած կլինի։

— Որ այդպես է, արի երեկոյան զբաղվենք այս հանքի պատմությամբ։

Երեկոյան Վազգենը պատրաստեց հաջորդ օրվա դասերը, ընթրեց և հարցրեց հորը.

— Հայրի՛կ, ամենահին հանքագործը մեր ավանում ո՞վ է։

— Քեռի Աբգարին ճանաչո՞ւմ ես. քառասունհինգ տարի է, ինչ նա այս հանքերում է աշխատում, Աղալո բիձան նույնպես։ Ի՞նչ կա որ։

— Ոչի՜նչ, ուզում ենք բան հարցնել նրան։

Հաջորդ օրը, դպրոցից վերադառնալիս Գուրգենն ու Վազգենը մտան հանքավանի ծայրին կառուցված երկհարկանի տներից մեկը։ Նրանք քեռի Աբգարին գտան բազմոցի վրա թիկնած, իր թոռնիկների հետ խաղալիս։

Տեսնելով իր պատանի հյուրերին, նա վեր կացավ ու սիրալիր ասաց.

— Հրամեցե՛ք, բալիկնե՛ր, ի՞նչ ունեք ասելու։

— Վատ գործի չենք եկել, պապի՛։



Քեռի Աբգարի հետ ունեցած զրույցից պարզվեց, որ իրոք այդ հանքը լրիվին սպառված չէ։

— Իսկ ինչո՞ւ չեն օգտագործում,— հարցրեց Գուրգենը։

— Ավելի հարուստ երակներ ենք գտել, նրանք ենք օգտագործում։

— Իսկ հնարավոր չէ՞ իմանալ, թե ո՛ր երակներն են սպառվել, որոնք՝ կիսատ մնացել։

Քեռի Աբգարը նրանց պատմեց ստորերկրյա ներքուղու մասին, որը վերջին հանքախորշի մոտից անցնելով տանում է դեպի մնացած կիսատ երակները։

## 2

Քեռի Աբգարը մի գյուտ դարձավ Գուրգենի ու Վազգենի համար։

Հաջորդ օրը կիրակի էր։ Առավոտյան նրանք անձավ մտան, հագան հանքափորի արտահագուստը և կարբիդի լապտերը ու հետախույզի մուրճիկը ձեռքներն առնելով, առաջ գնացին։

Ահա վերջին հանքախորշը։ Բայց ո՞ւր է ստորերկրյա ներքուղին։ Այս կողմ գնացին՝ չկա, այն կողմ գնացին՝ չկա։ Հասան հարևան հանքախորշին, ապա հակառակ կողմն ստուգեցին՝ չկա ու չկա։

— Ա՜, գլխի ընկա, չէ՞ որ կարող է մուտքը ծածկված լինել,— բացագանչեց Գուրգենը։

— Փնտրենք,— կարճ պատասխանեց Վազգենն ու նրանք սկսեցին փորփրել գետինը։ Որտեղ ապառը թույլ էր, կասկածում էին ու փորում։ Հանկարծ քլունգը խորացավ և օդի սուլոց լսվեց։ Մուտքը լայնացրին ու ներս սողացին։

Անցքը շատ նեղ էր։ Առջևից Գուրգենն էր գնում ուղի բացելով, Վազգենը հետևում էր նրան։ Ներսից փչող օդը ծանր էր։ Նրանց աչքերը արցունքոտվեցին, սաղավարտները շուտ-շուտ կպչում էին կախված առաստաղին։

Տեղ-տեղ փխրուն ժայռաբեկորները թափվել էին ու ուղին կտրել։ Տղաները քրտնքի մեջ կորած՝ ճանապարհ էին բացում իրենց համար։

— Լայնացավ, Վազգե՛ն, արի,— գոչեց Գուրգենը և հասակով մեկ կանգնեց լայն ու բարձր հանքուղում։

Դուրս եկավ և Վազգենը։ Ցեխակոլոլ էին։ Նրանք արմունկներն ու ծնկները քերծելով, կարբիդի լապտերը ջուր լցրին. լույսը շլացուցիչ դարձավ։ Քիչ էլ առաջ գնացին և նրանց առջև բացվեց մի ընդարձակ հրապարակ։

Ապա բռնեցին ձախակողմյան ուղին։ Շուտով հանքախորշում էին։

Փոքրիկ մուրճով նրանք խփեցին հանքախորշի պատերին։ Ապառը մետաղի հարվածից կայծեր արձակեց։ Ապառի միջից երևաց պղնձի շերտը...

— Պղնձաքա՛րը, պղնձաքա՛րը,— միաժամանակ գոչեցին տղաները։

Թվում էր, թե հեքիաթում են նրանք այդպես գեղեցիկ գույներ տեսնում։ Զանազան մեծության, շախմատաձև ու շերտերով դասավորված այս ապառի կտորները, պիրիտի, խալկոպիրիտի, կվարցի ու այլ հանքատեսակների միացություններ էին։

— Կհանենք լույս աշխարհ ու կփորձենք,— ասաց Գուրգենը։

Երկուսն էլ հոգնած էին։ Նստեցին ապա-

րի վրա, նախաճաշեցին, հանգստացան և ապա վերադարձան տուն։

3

— Մի խումբ պիոներներ ցանկանում են ձեզ տեսնել,— հանքերի վարչության կառավարիչ Գեորգյանին զեկուցեց քարտուղարուհին։

— Պիոներնե՞ր, թող գան։

Դուռը բացվեց և կարմիր վզկապներով պատանիները ներս մտան։ Ասես գարունը մուտք գործեց դռնից ու պատուհաններից․․

— Բարև ձեզ, ընկե՛ր Գեորգյան,— միաբերան ասացին նրանք։

— Բարև, իմ պատանի բարեկամնե՛ր, նստեցեք, ահա՛ աթոռներ։ Լսում եմ ձեզ։

Պիոներները նստեցին։ Գուրգենն առաջինը խոսեց.

— Ընկե՛ր Գեորգյան, մեր ջոկատի պիոներները մի կարևոր խնդրով են եկել ձեզ մոտ։ Երեկ մենք՝ ես ու իմ ընկեր Վազգենը մի լքված հանք մտանք։ Անցանք շատ նեղ մի ուղիով, հայտնաբերեցինք այնպիսի հանքախորշ, որտեղ պղնձաքարի պաշարը դեռ սպառված չէ և կարելի է շահագործել։ Մենք ջոկատով խնդրում ենք, որ դուք հետախուզողների միջոցով ստուգեք, եթե իրոք պաշարներ կան՝ սկսեք շահագործումը։



Եվ Գուրգենը երկու կտոր պղնձաքար հանեց պայուսակից ու դրեց կառավարչի սեղանին։

— Ահա այդ հանքախորշի ապարի նմուշը։ Մեր կարծիքով՝ պղնձի բարձր տոկոս է պարունակում։

Կառավարիչը փորձված մասնագետի աչքով զննեց հանքաքարն ու ասաց.

— Դուք հիանալի գործ եք արել։ Բայց մի՞թե այնտեղ հանքաքար կա, ախր մնացած փաստաթղթերի համաձայն այնտեղ սպառվել են երակները։ Հենց վաղը հետախույզներ կուղարկեմ։ Դուք վաղը չէ մյուս օրը եկեք ինձ մոտ։



Մյուս օրը պիոներները նորից գնացին Գեորգյանի մոտ։ Կառավարիչը մոտեցավ անկյունի սեղանին, վերցրեց մի քանի կտոր պղնձաքար և ասաց.

— Ահա ձեր հայտնաբերած պղնձաքարի նոր նմուշներ։ Հարուստ պաշարներ եք գտել, կեցցեք, կօգտագործենք։ Հանքերի վարչությունը ձեր պիոներական ջոկատին շնորհակալություն է հայտնում։

Պիոներների հուզմունքին չափ չկար։

— Պիոներական հանք,— խնդրում ենք այդպես կոչեք այդ հանքը,— ջոկատի անունից խնդրեց Գուրգենը։

— Պիոներական հա՞նք... Հարմար անուն է,— համաձայնեց կառավարիչը։

Մի ամիս անց պղնձաքարով բարձած վագոնիկները իրար ետևից դուրս էին գալիս «Պիոներական հանքից»։

# ՄԻՉՈՒՐԻՆԱԿԱՆԸ

*ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱՅԱՆ*

Նայեցե՛ք դուք այս պատանուն
Վզկապավոր,
Տեսե՛ք, թե նա ինչ է անում
Այգում իր նոր:

Նա է տնկել ծառերն ամբողջ
Իր նոր այգու,
Ցանել ծաղկունք անուշահոտ,
Հազարագույն:

Ու փորձեր է կատարում նա,
Այնքան ջանել,
Պատվաստում է ծառեր կանաչ
Ու զանգրահեր:

Այգեպանի նման ուշիմ
Ու հոգատար,
Տեսե՛ք, ինչպես խնամում է
Ամեն մի ծառ:

Ու տարված վառ երազներով
Տեսնում է նա,
Իր ծառերը նոր մրգերով
Բեռնավորված:

Նայեցեք, թե ինչ է անում
Այգում իր նոր,
Միչուրինի փոքրիկ որդին
Վզկապավոր:

---



Ծաղկաձորի մանկական քաղաքում. պիոներները շտապում են լիցքի




Խ. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ　　Նկ. Մ. ԱԲԵՂՅԱՆԻ

1

Հասակակիցների մեջ ոչ մեկն այնպես չէր կարողանում լողալ, ինչպես նա: Ճեղքում էր գետի հոսանքը, կարող էր մի ամբողջ րոպե մնալ ջրի տակ՝ ամենախոր տեղերում, հատակից ավազ հանել: Երբ նա գետն էր մտնում, ափին կանգնած տղաները հիանում էին նրանով, իսկ ափի մոտ լողացող փոքրիկները շտապում էին ջրից դուրս գալ: Վարդանն աջ ու ձախ «խեղդում» էր նրանց:

Նա կամաց-կամաց սովորեց ընկերների գովասանքին: Սկսեց հրամայել փոքրերին:

— Համո՛:

— Հը՞:

— Վաղը խնձոր կբերես:

Համոյենք խնձորենի չունեին, բայց մյուս օրը Համոն խնձոր բերեց: Վարդանի համար հետաքրքիր չէր, թե որտեղից էին խնձորները: Իսկ եթե ընկերներից մեկը համարձակվեր հրամանը չկատարել, այլևս չէր կարող գետ մտնել. Վարդանը «կխեղդեր» նրան:

Գետափին՝ մացառների առանքում մի ողորկ քար կար: Վարդանն այդ քարի վրա էր շորերը հանում, դա ամենալավ տեղն էր: Հագնվելիս կարելի էր ոտքերը լվանալ, մինչդեռ մյուս տղաները հաճախ ստիպված էին լինում հողոտ ոտքերով հագնվել:

2

Զառիթափ արահետով տղաների խումբն իջնում էր գետափ: Նրանց մեջ էր նաև Վարդանը: Նա քայլում էր դանդաղ ու հանդիսավոր, մինչդեռ փոքրերը վազվզում էին հենց ընթացքի ժամանակ հագուստները հանելով:

Երբ խումբը գետափ հասավ, Վարդանը նկատեց, որ իր քարի վրա ինչ-որ մեկի շորերն են դրված:

— Էհե՜յ,— բարկացած գոռաց նա,— այս ո՞ւմ շորերն են:

Գետի մեջ երկու տղա իրար վրա ջուր էին շաղ տալիս: Նրանք այնքան զբաղված էին, որ Վարդանի ձայնը չլսեցին:

— Հե՜յ,— կրկին ձայն տվեց Վարդանը:

— Ի՞նչ ես գոռում,— շուռ գալով ասաց ջրի մեջ խաղացողներից մեկը:

Վարդանն առաջին անգամ էր նրան տեսնում:

— Սրանք ո՞ւմն են,— շորերը բարձրացնելով բացագանչեց նա:

— Մի՛ գոռա, իմն են,— բարկացավ տղան, ապա մեղմանալով ավելացրեց,— գուլպաս ջուրը գցեցիր:

Նա արագ մոտեցավ ափին, ջրից գուլպան հանեց ու տարավ մոտիկ մացառի վրա փռելու:



— Շորերդ էլ կգցեմ,— նրա ետևից գոռաց Վարդանը:
Տղան զարմացավ:
— Ինչո՞ւ:
— Այս տեղն իմն է:
— Անունդ վրան գրված չի:
Նրանց շուրջը հավաքված տղաները ծիծաղեցին: Անծանոթ տղան հանգիստ մոտեցավ Վարդանին, վերցրեց նրա ձեռքից իր հագուստները ու դրեց քարի վրա:
— Դու էլ հանվիր, երկուսիս էլ տեղ կլինի:
Տղան գեղեցիկ ոստյունով իրեն ջուրը նետեց:
— Լա՛վ,— ասաց Վարդանն ու արագ հանվելով հետևեց նրան: Նա հաստատ որոշել էր գետում մի քանի անգամ «խեղդել» տղային: Թող խելքի գա: Մոտեցավ նրան:
— Անունդ ի՞նչ է:
— Ման գաս՝ չգտնես:
— Հիմա ես քեզ «կխեղդեմ»:
— Փորձի՛ր:
Վարդանն ավելի մոտեցավ և հանկարծ երկու ձեռքով ամուր սեղմեց նրա ուսերը: Բայց տարօրինակ բան, անծանոթ տղան չխորասուզվեց, Վարդանն ինքը գլուխկոնծի տվեց և չրմփաց ջրի մեջ:
— Քարի վրա՞ էիր կանգնել:
— Իհարկե,— հեգնեց անծանոթը և ավելացրեց,— հիմա տես, թե ինչպես են «խեղդում»:
Նա արագ մոտեցավ Վարդանին, մի ձեռքով ջուր շփեց նրա դեմքին, իսկ մյուսով բռնեց ուսը: Նա Վարդանին հրեց ջրի տակ: Վերջինս արագ հասավ հատակին և ավազի վրա նստեց:
Երբ մի վայրկյան հետո նա գլուխը ջրից հանեց, անծանոթը ծիծաղում էր...
— Հը՞, ավազ հանեցի՞ր...
Վարդանը բարկացած վրա հասավ: Մի երկու անգամ նա կարողացավ սուզել անծանոթին, բայց ինքն էլ իջավ հատակը: Տղան հանգիստ էր: Նա անընդհատ ծիծաղում էր, իսկ երբ Վարդանին հաջողվում էր նրան «խեղդել», նա նույնիսկ գովում էր.
— Ա՛յ, լա՛վ էր:
Երբ երկուսն էլ բավական հոգնած դեպի ափ էին լողում, անծանոթն ասաց.
— Թևերդ ուժեղ են, իսկ ոտքերդ՝ թույլ:
Տղան հագնվեց ու գնաց: Վարդանը պառկեց ավազի վրա: Երեխաները թրջված ավազից բերդեր էին շինում և խոսում անծանոթ տղայի մասին:
— Լավ է լողում, հա՛...



— Հիանալի:
— Հպարտ էլ չի, այսօր ես վախեցա, թե նա «կխեղդի», բայց ինձ լողալ էր սովորեցնում:
Իսկ մեկն ասաց.
— Ես ճանաչում եմ, Երևանից է եկել, անունը Հակոբ է, Խաչիկի քեռու տղան է. արձակուրդներին այստեղ է մնալու: Երևանի Պիոներների պալատում լողի խմբակ կա, նա այնտեղ է լողալ սովորել:
Վարդանը մռայլ էր, նրա համար տհաճ էր այդ զրույցը, բայց ամենից վիրավորականը «հպարտ էլ չի» բառերն էին: Մի քանի րոպե լողացավ, մոտեցավ քարին, հագնվեց ու տուն գնաց:

## 3

Դրանից հետո Հակոբն ամեն օր գալիս էր գետափ:

Գյուղի բոլոր տղաները մտերմացել էին նրա հետ: Վարդանն իրեն հեռու էր պահում: Փոքրիկներն առաջվա նման վախենում էին նրանից, բայց էլ չէին հիանում նրանով, իսկ Հակոբին շրջապատում էին սիրով: Նա նրանց չէր «խեղդում», ընդհակառակը, բացատրում էր այն ամենը, ինչ լողի խմբակում սովորել էր: Այդ բոլորը Վարդանի համար էլ էր հետաքրքիր, բայց նա զսպում էր հետաքրքրությունը, չէր մոտենում:

Առաջվա նման Վարդանը ողորկ քարի վրա էր դնում իր հագուստները: Այս դեպքից հետո Հակոբը ոչ մի անգամ այդ քարին չէր մոտեցել: Առաջին օրերը Վարդանին այդ բանը դուր եկավ, բայց հետո կամաց-կամաց ինչ-որ անհարմարություն զգաց:

Մի անգամ Հակոբը առագաստանավի մի մոդել բերեց: Վարդանը դեռ այդպիսի բան չէր տեսել: Նավը ներկված էր կանաչ գույնով, իսկ նրա եզրերով անցնում էր մի բարակ արծաթագույն գիծ: Մոդելը ջուրն իջեցրին: Կայմին կապված սպիտակ առագաստներն ուռեցին, նավն սկսեց լողալ: Հակոբն աչքից կամաց-կամաց բաց էր թողնում թելը: Բոլորն առագաստանավին էին նայում:

— Ի՜նչ գեղեցիկ է:

— Հակո՛բ, դու ե՞ս պատրաստել:

— Այո:

Վարդանն էլ էր հիացած նայում մոդելին ու մտածում. «Երանի, թե ես էլ կարողանայի այդպիսի մի բան պատրաստել»:

— Տղե՛րք, եկեք մեծ մոդել պատրաստենք,— հանկարծ ասաց Հակոբը,— միայն թե այստեղ գործիքներ չկան:

— Գործիքներ ես կբերեմ,— ասաց մի փոքրիկ տղա,— իմ հայրիկը հյուսն է:

— Ա՛յ, հիանալի՜ է,— ուրախացան բոլորը:

Վարդանն այլևս չհամբերեց, արագ մոտեցավ հավաքվածներին և ասաց.

— Ես էլ եմ ուզում:

## 4

Մի քանի օր հետո նոր մոդելը պատրաստ էր: Տանում էին գետում փորձելու:

— Մարդ կարողանա իսկակա՛ն նավ պատրաստել,— երազկոտ ասաց Վարդանը:

— Այդ այնքան էլ հեշտ չի,— ծիծաղեց Հակոբը:

— Իհարկե, գիտեմ:

Հասան գետափ: Բոլորն սկսեցին հանվել: Վարդանը Հակոբին ասաց.

— Շորերդ դիր այն քարի վրա:

— Ինչո՞ւ:

— Ես այստեղ էլ կարող եմ:

— Իսկ ես չե՞մ կարող:

Վարդանն ամաչելով ժպտաց:

— Դե՜, ես այն օրը վատ արեցի, գիտես...

Մի փոքրիկ տղա, որ անհամբեր սպասում էր մոդելը ջուրն իջեցնելուն, հանկարծ վճռեց.

— Եկեք հանվելու տեղ պատրաստենք, որ հագնվելիս բոլորն էլ կարողանան շորերը լվանալ:

Հաջորդ օրը մացառները չկային: Նրանց փոխարեն գետափին, իրար մոտ ողորկ քարեր էին շարված: Ստացվել էր մի հարմար հրապարակ, որի վրա դրված էին բոլորի հագուստները. իսկ գետի կենտրոնում սպիտակ առագաստները պարզած, հպարտ լողում էր առագաստանավի մոդելը:



# Ճամբարի գիշերը



ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ

Օրվա խաղերից,
Խարույկից հետո
Շեփորը մեղմիկ
Հնչեց դուրեկան,
Ոսկեփայլ լուսնի
Շողերի ներքո
Մանուկներն ուրախ
Անկողին մտան:

Զեփյուռն է խաղում
Դեմքերին նրանց,
Շոյում է կարծես
Հարազատ մոր պես.
Շյուղերից հյուսած
Բներում թառած,
Հավքերը նախշուն
Քնել են նույնպես:

Պահակներն ահա
Շրջում են մեկտեղ՝
Անդորրն են հսկում
Ամբողջ ճամբարի,
Որ աստղերի տակ
Պայծառ ու շքեղ
Նրանց քունն անուշ
Մարդ չխանգարի:

Խաղաղ ու հանգիստ
Քնեցեք մուշ-մուշ,
Թող ձեզ տաղ ասի
Գետակը աշխույժ.
Ողջ խաղաղասեր
Մարդիկ աշխարհում
Ձեր կյանքի համար
Պայքար են մղում:



## ԶՐՈՒՅՑՆԵՐ ԽԱՐՈՒՅԿԻ ՇՈՒՐՋԸ

Նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ

*Երբ երեկոյան խավարը դանդաղորեն տարածվեց Ծաղկունաց ձորում, շեփորի զիլ կանչերի տակ վառվեց պիոներական խարույկը։ Խարույկի շուրջը բոլորած պիոներները լարված ուշադրությամբ լսում էին պատմողին։ Նա պատմում էր քաղաքացիական կռիվների անմահ հերոս Վ. Ի. Չապաևի սխրագործություններից մի դեպք։ Զրույցի վերնագիրն այս էր.*

# 1. ԻՆՉՊԵՍ ԵՐԵԽԱՆԵՐՆ ՕԳՆԵՑԻՆ ՉԱՊԱԵՎԻՆ

*Մի օր Չապաևը հետախուզման գնաց։ Նա և իր չորս մարտիկը գնում էին ձիերի վրա նստած, իսկ նրանց ետևից եկող սայլակի վրա, գնդացրի մոտ նստած էին Պետկա Իսաևը ու Չապաևի ութ տարեկան տղան՝ Արկադին։ Արդեն երեկոն իջնում էր, երբ չապաևցիները փոքրիկ անտառ տեսան։ Նրա մոտով հոսում էր գետը։ Գետից այն կողմը, հեռվում երևում էր Կլինցովկա գյուղը։ Գետի ափին երեսունից ավելի ձիեր էին արածում, որոնց հսկում էին գյուղի երեխաները։ Նրանց չվախեցնելու համար, Չապաևն առաջ ուղարկեց իր տղային՝ Արկադիին։*

*— Դու ո՞վ ես,— հարցրին երեխաները Արկադիին։*

*— Չապաևը,— պատասխանեց նա։ Երեխաները ծիծաղեցին։*

*— Դե՜, իհարկե, Չապաևն է՝ հսկա ձիով, արծաթե մեքենայով։*

*— Ես նրա տղան եմ՝ Արկադի Չապաևը։*

*Այդ ժամանակ Վասիլի Իվանովիչը հեռվից հարցրեց.*

*— Երեխանե՛ր, դուք Կլինցովկա գյուղի՞ց եք։*

*— Այո,— պատասխանեցին երեխաները և կամաց-կամաց մոտեցան նրան։*

*— Այստեղ ի՞նչ եք անում։*

*— Մենք ձիերին ենք հսկում, որ սպիտակները չտանեն։*

*— Ուրեմն սպիտակները գյուղո՞ւմ են։*

*— Գյուղում են։*

*— Սպիտակները շա՞տ են։*

*— Շա՜տ,— պատասխանեցին երեխաները։*

*Չապաևցիներն իջան ձիերից և սկսեցին խորհրդակցել։ Երեխաները պետք է խարույկի համար փայտ հավաքեին, բայց տեսնելով սայլակն ու գնդացիրը, ամեն ինչ մոռանալով մոտ վազեցին եկվորներին։*

*— Իսկ դուք համարձա՞կ եք,— հարցրեց Չապաևը։*

*— Դե՜, իհարկե, համարձակ ենք,— պատասխանեց տղաներից ամենամեծը, որը 14 տարեկան կլիներ։*

*— Ուզո՞ւմ եք սպիտակներին գյուղից դուրս քշել։*

*— Ուզում ենք։*

*— Այդ դեպքում ուռենու ծառից փայտեր կտրեցեք և կեղևը մաքրեցեք։*

*Երբ սպիտակ փայտերը պատրաստ էին, Չապաևն ասաց.*

*— Շուտով բոլորովին կմթնի։ Դուք կընստեք ձիերը և կարշավեք դեպի գյուղ։ Փայտերը թրերի նման կթափահարեք օդում, իսկ երբ կրակոցներ կլսեք՝ փախեք տները. պա՞րզ է։*

*— Պարզ է,— պատասխանեցին տղաները։*

*Մթնեց։ Տղաները դեպի գյուղ սլացան, իսկ Չապաևը իր մարտիկների հետ Կլինցովկային մոտեցավ հակառակ կողմից։ Շուտով Չապաևը կրակեց և պայմանական հրթիռ բաց թողեց։ Սպիտակները դուրս թափվելով տներից, հրթիռի լույսի տակ տեսան իրենց կողմն արշավող ձիավորներին, որոնք օդում ճոճում էին սրերը։ Հրթիռը հանգավ, ձիավորները կորան խավարի մեջ։ Հենց այդ պահին գնդացիրը սկսեց ճարճատել և ատրճանակի կրակոցներ լսվեցին։ Սպիտակները չկարողացան վազել դեպի զենքերը։ Նրանց վրա արշավեցին ձիավորները՝*



*Չապաևի գլխավորությամբ։ Սպիտակները շփոթվեցին, տեսնելով, որ չապաևցիներն իրենց վրա են արշավում բոլոր կողմերից։ Նրանց մնում էր խառնիխուռն փախչել և թաքնվել բակերում, իսկ Չապաևն իր հինգ մարտիկով բակից-բակ անցնելով սկսեց գերիներին հավաքել։ Ավելի ուշ՝ սպիտակները տեսան, որ իրենց գերի են վերցրել ընդամենը մի քանի մարդ։ Գյուղի երեխաները երկար ժամանակ ուրախությամբ հիշում ու պատմում էին, թե ինչպես օգնեցին Չապաևին, սպիտակ բանդիտներին գյուղից քշելու ժամանակ։*

***Զրույցը վերջացավ։***

*Սկսվեց ուրախ երգն ու պարը։ Ուշ երեկո էր, երբ շեփորը պիոներներին քնելու կանչեց։*

## 2. ՊԱՏԱՆԻ ՀԵՐՈՍԸ

*Օղակավար Լենան իր զրույցն այսպես սկսեց.*

*— Պատանի հերոսը, որի մասին հիմա պատմելու եմ, մեզ նման պիոներ է եղել։*



*Նրա մասին ես կարդացել եմ «Պիոներսկայա Պրավդա» թերթում...*

*Հայրենական Մեծ պատերազմի օրերին, Օմսկ քաղաքն է գալիս մի վիրավոր սպա, իր արձակուրդն անցկացնելու համար։ Առաջին օրն սպան դպրոց է գնում։ Մտնելով պիոներական սենյակը, նա ջերմորեն ողջունում է պիոներներին, պայուսակից հանում է մի մեծ ծրար, տալիս է երեխաներից մեկին և լուռ հեռանում։*

*Պիոներները բացեցին ծրարը, որի մեջ մի կարմիր վզկապ և մի նամակ կար. Նամակում գրված էր.*

*«Թանկագին պիոներներ. ուղարկում ենք ձեզ այս նվերը և համոզված ենք, որ ջոկատը պատվով կպահի։ Կարմիր վզկապը պատկանում էր մի սպանված պիոների։ Մենք կարողացանք իմանալ, որ նա եղել է պարտիզանական ջոկատներից մեկի հետախույզը և թշնամու թիկունքից կարևոր տեղեկություններ է հաղորդել պարտիզաններին։ Գերմանական ֆաշիստները բռնում են նրան։ Պատանին քաջաբար դիմանում է ամեն տեսակի տանջանքների, բայց ոչ մի գաղտնիք և ոչ մի պարտիզանի անուն չի ասում թշնամուն։ Ֆաշիստները նրան սպանում են և դիակը գցում փողոց, թույլ չտալով թաղել։*

*Այս դեպքից երեք օր հետո մեր զորամասը գրավեց գյուղը և մենք հերոսի դիակը զինվորական պատվով հողին հանձնեցինք։ Մենք երդվեցինք ֆաշիստներից վրեժ լուծել պիոների համար։ Թող այդ կարմիր վզկապը ձեզ միշտ հիշեցնի ռուս տղայի հերոսական կյանքի մասին, որն ամբողջապես նվիրվեց հարազատ Հայրենիքին։*

*Մի քանի րոպե պիոներները լուռ նայում էին միմյանց։ Պիոներներից մեկը վերցնելով կարմիր վզկապը, ցույց տվեց գնդակների տեղերը։*

*— Կրծքին են կրակել,— կամաց ասաց նա։*

*Երեխաները դիտում էին թանկագին նվերը։ Ջոկատավարը վերցրեց վզկապը և համբուրեց։ Նա մոտեցավ պատվանդանին, որի վրա դրված էր պիոներական կարմիր դրոշակը, վզկապը ամրացրեց նրան և դառնալով պիոներներին՝ ասաց.*

*— Հարգենք մեր հերոս ընկերոջ հիշատակը։*

*Պիոներները ոտքի կանգնեցին։ Խորին լռության մեջ երեխաները մի քանի րոպե կանգնած պատիվ էին տալիս հերոս պիոներին։ Բոլորը հուզված լսում էին։ Լենան ավելի ոգևորվելով ասաց.*

*— Ընկեր պիոներնե՛ր, մեզանից ամեն մեկը պետք է հետևի նրա օրինակին։ Սովորենք լավ, դառնանք Հայրենիքի խիզախ, ազնիվ ու համարձակ քաղաքացիներ, Լենինյան-Ստալինյան կոմերիտմիության արժանավոր փոխարինողներ։*

*Մի քիչ հետո երեխաները գնացին իրենց վրանները հանգստանալու։*

# ԳԱՎԱԹԸ

*ՍԱՐՄԵՆ*

*Նկ. ԳՐ. ԱՂԱՍՅԱՆԻ*

Վրաններից խումբ-խումբ եկել,
Հավաքվել ենք բացատում,
Շուրջը՝ ծիծաղ, ուրախ երգեր,
Դեմքեր՝ խելոք ու խնդուն։



Նստել ենք մենք բավ կանաչին՝
Կազմած հսկա մի շրջան,
Մեջտեղը սեղանն է առանձին՝
Արծաթ-գավաթը վրան։

Հնչում է զիլ շեփորը մեր,
Ու խաղաղվում է ջրու դին.
Եվ մենք բոլորս անհամբեր՝
Լո՛ւռ նայում ենք գավաթին։

Խնդությունից սիրտս է եռում,
Չէ՞ որ այսօր ջոկատն իմ
Վազքի, լողի մրցումներում
Մեկ-մեկ հաղթեց բոլորին։

Եվ երբ գավաթն ինձ է տալիս
Ղեկավարը համբարի,
Ու գոչում է. «Կեցցե՛ս, Ալիս,
Դու հաղթող ես և արի»,

Ամբողջ անտառն է խուլ բնդում,
Մեր ծափերի որոտից,
Եվ սարերն են մեզ հետ խնդում,
Արձագանքում չորս կողմից։

***

Այս ժամին ես այնքա՜ն հպարտ,
Երջանիկ եմ աշխարհում...
Ի՛նչ լավ է, երբ հաղթող է մարդ,
Երբ մարդ բարձունք է տիրում։



# Հյուսիսային մարշրուտով

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Երևանի № 29 դպրոցի Հայրենի երկիրն ուսումնասիրող խմբակի խորհուրդն ամառային արշավների օրացուցային պլան կազմեց: Ամենից հետաքրքիրը վեցօրյա արշավն էր դեպի Կիրովական, Ստեփանավան և Ալավերդի:

Ընտրվեց խմբակի ղեկավարի օգնական, նշանակվեցին պատի թերթի խմբագիր, թղթակիցներ, գծագրողներ, նկարիչներ և լուսանկարիչ: Մինչև արշավի դուրս գալը նրանք մանրամասն ծրագրեր կազմեցին. ձեռք բերեցին անհրաժեշտ գրենական պիտույքներ, լուսանկարչական ապարատ և գրականություն: Խմբակի խորհուրդը նշանակեց հանքաքարերի, բույսերի և միջատների կոլեկցիա հավաքողներ: Նշանակվեցին նաև տնտեսվար և օգնականներ՝ խոհարար, խարույկ վառող:

Հետախույզներն ու կապավորները սովորեցին Մորզեի այբուբենը, դրոշակախոսություն, ճանապարհորդական նշաններ: Օդերևութաբաններ էլ նշանակվեցին: Սանիտարը դպրոցի բժշկուհու մոտ ծանոթացավ առաջին օգնության գործին, պատրաստեց ճանապարհորդական դեղարկղ և դեղորայք ձեռք բերեց:

***

Հունիսի 24-ն էր՝ ամառային մի կիրակի օր: Առավոտյան ժամը 7-ին մեր Հայրենի երկիրն ուսումնասիրող խմբակը դպրոցից ավտոմեքենայով դուրս եկավ Սևանի ուղղությամբ: Երեք ժամ հետո անցանք Սևան շրջկենտրոնը, իսկ ցերեկվա ժամը 12-ին Դիլիջանում էինք: Մի քանի կիլոմետր Բլդան-չայի հոսանքով վեր գնալով, կանգ առանք Թթու-ջուր աղբյուրի մոտ, որը հիմա հայտնի է «Դիլիջան» հանքային ջուր անունով: Աղբյուրի մոտ էլ կառուցված է հանքային ջրի գործարանը, որը տարեկան 750 հազար շիշ ջուր է տալիս: Այդ ջուրը օգտագործվում է ստամոքսի հիվանդություն ունեցողներին բուժելու համար: Այստեղ մի փոքր շրջելուց հետո շարունակեցինք մեր ուղին:

Կիրովականի ճանապարհին ընկած Լերմոնտով գյուղից մենք թեքվեցինք դեպի անտառ և իջանք դեպի Որսորդական տնտեսության աղվեսաբուծական սովխոզը:

Սովխոզը տեղավորված է գեղեցիկ անտառում: Ավագ անասնաբույժ ընկեր Նեչաևը մեզ ծանոթացրեց իրենց սովխոզի հետ, որն ունի համամիութենական նշանակություն: Այդտեղ պահում են սև-արծաթագույն ցեղի աղվեսներ, որոնց մորթիներից վզնոցներ են պատրաստում: Աղվեսներին կերակրում են մսով, կրուպայով, հացով և վիտամիններով: Բայց նրանց ամենալավ սնունդը շերամի թրթուրի հարսնյակն է: Դա ստացվում է Երևանի շերամի գործարանից:

Ժամը 4-ին մենք Կիրովականում էինք: Մեզ դիմավորեցին տեղի № 3 դպրոցի պիոներները և տարան իրենց դպրոցը:

Այնտեղ մենք եղանք մի քանի գործարաններում, «Հայաստան» սանատորիայում, որտեղ հանգստանում ու բուժվում են 805 հիվանդ:

Մյուս օրը վաղ առավոտյան փողհարը մեզ լիցքի կանչեց: Նախաճաշից հետո հրաժեշտ տվինք մեզ ճանապարհ գցող դպրոցականներին և ոտքով շարժվեցինք դեպի Պուշկինի լեռնանցքը: Չորս կիլոմետր անցնելուց հետո 10 րոպե հանգստացանք ու սկսեցինք վերելքը դեպի Բզովդալի լեռնաշղթան: Վերելքը գնալով դժվարանում էր:

Ցերեկվա ժամը 3-ին հասանք Պուշկինի լեռնանցք՝ 2038 մետր բարձրության վրա: Մեր հետախույզները վերցնելով վրաններր իջան ավելի ներքև, իսկ մենք սկսեցինք մեխակ և այլ ծաղիկներ, ծառերի տերևներ, ու գեղեցիկ քարերի նմուշներ հավաքել: Քիչ հետո խոհարարը բոլորիս հրավիրեց ճաշի: Ճաշը շատ համեղ էր, որովհետև խոհարարն օգտագործել էր անտառի համեմունքներ:

Հերթապահ կապավորը, որը հետևել էր հետախույզներին՝ քիչ անց դրոշակախոսությամբ նրանցից հեռագիր ընդունեց՝ «Հանգըստի վայրը պատրաստ է, եկեք»: Շարժվեցինք հետախույզների հետքերով: Շուտով երևացին վրանները: Մեր փոքրիկ ճամբարում բարձրացել էր պիոներական դրոշը:

Մի փոքր հանգստանալուց հետո մենք գրվեցինք անտառում: Պիոներները մեծ հաճույքով սկսեցին հետապնդել ծառից-ծառ ցատկոտող սկյուռին, բռնեցին ու տեղավորեցին փոքրիկ վանդակում: Մեր առաջին խարույկը վառելու թույլտվություն ստացավ Վոլոդյա Նիկողոսյանը, որը բռնել էր սկյուռին: Գիշերը նշանակեցինք հերթապահներ: Մեր միօրյա փոքրիկ ճամբարի դրոշը իջեցրեց հետախույզ Արամայիս Արզումանյանը:

Հունիսի 26-ն էր: Հավաքելով վրանները շարժվեցինք դեպի Ստեփանավան: Այստեղ մեզ դիմավորեցին մի խումբ երեխաներ, որոնք եկել էին «Անտառի դպրոց» մանկական սանատորիայից: Նրանց մեջ կային Երևանից եկած պիոներներ: Նրանք մեզ ցույց տվեցին Ստեփան Շահումյանի տուն-թանգարանը, նորակառույց թատրոնի շենքը, գրադարանը և գեղեցիկ աղբյուր-հուշարձանը: Եղանք նաև սանատորիայում:

Մյուս օրը մենք Գյուլագարակից գնացինք Քոլագերան, այստեղից էլ սիրելի գրող Հովհաննես Թումանյանի ծննդավայր Թումանյան գյուղը: Թումանյանի տուն-թանգարանը դիտելուց հետո գնացինք Ձաղի ձոր, հետո՝ Քոբեր: Եղանք այն կավահանքում, որտեղի կավից հրակայուն աղյուս են պատրաստում: Հրակայուն աղյուսը գործադրվում է մետաղաձուլական և ապակու գործարաններում՝ ձուլարաններ կառուցելու համար: Հրակայուն աղյուսն ուղարկվում է հարևան ռեսպուբլիկաներն ու Հյուսիսային Կովկաս:

Մյուս օրը ուղևորվեցինք Սանահին: Մեզանից մի ժամ առաջ դուրս եկած հետախույզները անտառում ծառերի վրա և բացատներում թողել էին ճանապարհորդական նշաններ, որոնց օգնությամբ առաջ էինք գնում: Առջևից գնացողները գտան հետախույզների թողած ծրարը: Այդտեղ նըշված էր ուղղությունը՝ ազիմուտով «88»: Կողմնորոշվեցինք դեպի $88^{0}$ և շարժվեցինք: Շուտով հասանք Ակներ, հետո Հաղպատ: Այնտեղ տեսանք 693 տարի առաջ կառուցված աղբյուրը և Հաղպատի վանքը:

Այդ օրը Ալավերդի քաղաքից Սպանդարյանի անվան դպրոցի մի խումբ պիոներներ մեզ էին սպասում: Նրանց հետ պետք է գնայինք Լենինյան հանքերը: Բայց մեր օդերևութաբանը նախազգուշացրեց, թե անձրև է գալու: Նա ցույց տվեց 8—10 մետր բարձրության վրա ճախրող ծիծեռնակներին և ցածր ու խիտ ամպերը: Մենք վերհիշեցինք մեր խմբակի պարապմունքների ժամանակ սովորած եղանակը որոշելու միջոցներից մեկը և համոզվելով, գիշերեցինք դպրոցում:

Հետևյալ առավոտյան գնացինք Լենինյան հանքերը: Այնտեղ մենք ծանոթացանք 50 տարվա բանվոր, կոնվերտորի ցեխի գըլխավոր վարպետ Իսակ Պապոյանի հետ: Իմացանք, որ նա պղնձագործների մի քանի սերունդ է դաստիարակել, և որպես անվանի բանվոր ընտրվել է ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ: Ծանոթացանք հաև նույն ցեխի վարպետ Հովհաննես Սարգսյանի հետ, որը Սովետական Միությունում կոնվերտորի մեջ պղինձ ձուլելու ամենակարճ ժամկետի նոր ռեկորդ է սահմանել: Ալավերդու բանվորները 1950 թվին նրան ուղարկեցին Մոսկվա՝ խաղաղության կողմնակիցների համամիութենական 2-րդ կոնֆերանսին մասնակցելու համար:

Պղնձաձուլարանում տեսանք հսկա արտացոլիչ հնոցը, 40 տոննա տարողությամբ հզոր կոնվերտորները, որոնց աշխատանքի ժամանակ գետինը դղրդում էր:

Գործարանում և հանքահորերում բոլոր աշխատանքները մեքենայացված են: Էլեկտրաքարշը փոքրիկ վագոնետկաներով հանքաքարը երկրի ընդերքից հանում և հասցը-



Վրա հասավ երեկոն, մենք գիշերեցինք Ալավերդու դպրոցի շենքում: Տեղի պիոներները մեզ նվիրեցին իրենց կազմած ապառների հարուստ կոլեկցիան: Իսկ մենք նրանց նվիրեցինք գեղարվեստական գրքեր:

Արշավի վերջին օրը, առավոտյան ժամը 6-ին, մենք գնացքում էինք: Ցերեկվա ժամը 11-ին հասանք Լենինական: Այստեղ էլ մեզ դիմավորեցին պիոներները: Կեսօրվա ժամը 4 և կեսին մենք նորից Երևանում էինք:

Մյուս օրը դրուժինայի հավաքում պատմեցինք, թե ինչքա՞ն նոր բաներ ենք տեսել ու սովորել արշավի ընթացքում, ցույց տվեցինք մեր բերած կոլեկցիաները, կենդանիները, լույս ընծայած թերթիկներն ու լուսանկարները:

*ԳՈՒՐԳԵՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ*

(№ 29 դպրոցի ավագ-ջոկատավար, Հայրենի երկիրն ուսումնասիրող խմբակի ղեկավար)

*ՄԱՄԻԿՈՆ ՂԱԼՈՒՄՅԱՆ*

(№ 29 դպրոցի ուսումնական մասի վարիչ, աշխարհագրության դասատու, արշավի մասնակից)

նում է գործարան: Բանվորները ապրում են լուսավոր և բազմահարկ շենքերում: Կա կինո, թատրոն, դպրոցներ, ակումբներ:

## ԾԱՂԿԱՁՈՐԻ ՄԱՆԿԱԿԱՆ ՔԱՂԱՔՈՒՄ

Ուրախ ու հետաքրքիր է անցնում պիոներական ամառը:

Հազարավոր պիոներներ իրենց հանգիստը անցկացնում են ճամբարներում: Մեր հայրենիքի բոլոր գեղատեսիլ վայրերում արդեն բարձրացվել են պիոներական ճամբարների դրոշները: Ճամբարներ են բացվել նաև Հայաստանի շրջաններում, իսկ ամենից շատ Ծաղկաձորի մանկական քաղաքում:

Հունիսի 24-ին Ծաղկաձորում տեղի ունեցավ պիոներական ճամբարների բացմանը նվիրված տրադիցիոն շքերթը: Տոնական տեսք էր ստացել Ծաղկաձորը: Ամենուր փողփողում էին ճամբարային դրոշները: Փողոց էին դուրս եկել ուրախ ու երջանիկ պիոներները, որոնք անսահման երախտագիտությամբ խոստացան ավելի լավ սովորել և դառնալ սիրելի Հայրենիքի արժանավոր քաղաքացիներ:



Շոգեքարշը վերջին անգամ սուլեց և դանդաղ ու ծանր շարժեց տեղից ապրանքատար մեծ գնացքը:

— Բարի ճանապարհ,— ճանապարհ դնելով գնացքը բացագանչեց կայարանի հերթապահը: Մեքենավարը դուրս նայեց իր խցիկից և ձեռքը թափահարեց, որպես հրաժեշտի նշան:



Երևանի փոքր հիդրոտուրբինների գործարանը Կոմունիզմի մեծ կառուցումներին: Նկարում՝ հավաքման ցեխի պետ Ա. Գևորգյանը (աջից) ու հավաքող Հ. Հովհաննիսյանը ստուգում են Վոլգա–Դոն ջրանցքի շինարարությանը ուղարկվող կենտրոնախույս պոմպերի որակը:



Էլեկտրալուսավորման արմատուրայի գործարանի բանվոր Վ. Լափաջյանը պատրաստում է արտադրանքը Կույբիշևի և Ստալինգրադի հիդրոկայաններին ուղարկելու համար:

# ԿՈՄՈՒՆԻԶ… կառուցումնե… ՀԱ…

*ՀՐ. ԲԱԳՐԱՋՅԱՆ*

Դա այն գնացքն էր, որ գնում էր դեպի Ստալինյան մեծ կառուցումները...

Անցավ ընդամենը 6—9 ամիս, բայց ինչքա՜ն բան է արված այդ կարճ ժամանակամիջոցում: Մեր հզոր հայրենիքի բոլոր քաղաքներն ու ռեսպուբլիկաները Ստալինյան կառուցումներին ուղարկում են շինանյութեր, սարքավորումներ և մարդիկ:

Ինչո՞ւ է մեր ժողովուրդը այդ կառուցումները կոմունիզմի անունով կոչել: Այդպես է կոչել, որովհետև հզոր հիդրոկայանները և հսկայական ջրանցքները, որոնք կառուցվում են Պովոլժյեում, Թուրքմենստանում, Ուկրաինայում ու Ղրիմում, կօգնեն սովետական մարդկանց կոմունիզմ կառուցելու գործին: Նրանք տասնյակ միլիարդ կիլովատ ժամ լրացուցիչ էլեկտրաէներգիա կտան, միլիոնավոր հեկտար չոր հողեր կոռոգեն:

Կատարվող աշխատանքների մեծությունը և նշանակությունը պատկերացնելու համար, բավական է միայն նշել Թուրքմենական գլխավոր ջրանցքը, որը Ամու–Դարիայից մինչև Կասպից ծովը կոռոգի Կարակում անապատը, իսկ Կարակումը մեկուկես անգամ ավելի մեծ է, քան Անգլիան:

Կոմունիզմի համար մղվող այս պայքարում մասնակցում են նաև մեր ռեսպուբլիկայի համարյա բոլոր գործարանները, ֆաբրիկաները, գիտական հիմնարկները:

Արթիկի քարահանքերն ուղարկում են այնտեղ ամենաբազմազան երանգների և գույների գեղեցիկ տուֆ: Տուֆը անհրաժեշտ է հիդրոկայանների, ինչպես նաև բնակելի շենքերի շինարարության համար:

Հայաստանը՝ Վոլգա, Դոն, Դնեպր և Ամու–Դարիա է ուղարկում տրանսֆորմատորներ, էլեկտրոարմատուրա և հաղորդալարեր: Դրանք հարկավոր են այնտեղ կառուցվող նոր քաղաքների



Նկ. Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ
Լուսանկ. Վ. ՍԵՎՈՅԱՆԻ

նավահանգիստների, բանվորական ավանների համար:

Մեծ նորակառույցներում աշխատում են հարյուր հազարավոր ավտոմեքենաներ և տրակտորներ: Հասկանալի է, որ այնտեղ հարկավոր են շատ պահեստի մասեր և ավտոդողեր: Սովետական Միության բազմաթիվ գործարանների հետ միասին, ավտոմոբիլային և տրակտորային պահեստի մասեր և ավտոդողեր են ուղարկում Երևանի «Ավտոդետալ» և ավտոդողերի գործարանները:

Մեր ռեսպուբլիկան այնտեղ է ուղարկում շատ ցեմենտ, կարբիդ, պոմպեր, էլեկտրազոդման տրանսֆորմատորներ, մարմար: Հենց վերջերս Կաբելի գործարանը ուղարկեց ութսուն կիլոմետր կաբել քայլող հսկայական էքսկավատորների համար:

Շատ բան են անում նաև Հայաստանի գիտնականները: Հայաստանի Գիտությունների ակադեմիայի Ջրա-էներգետիկ ինստիտուտը Սովետական Միության Գիտությունների ակադեմիայի և Լենինգրադի էլեկտրամեխանիկական ինստիտուտի հետ միասին կառուցում են Կույբիշևյան հիդրոհանգույցի գործող մոդելը Նորքում:

Թող «մոդել» բառը այնպիսի տպավորություն չստեղծի, թե դուք գործ ունեք ինչ որ փոքր բանի հետ, որը կարելի է նույնիսկ ձեռքն առնել: Այդ մոդելը մեծ կառուցվածք է: Կույբիշև քաղաքի մոտ ծավալվել է հիդրոկայանի կառուցումը, իսկ Երևանից ոչ հեռու արդեն ավարտում են հսկայական հիդրոհանգույցի ճշգրիտ պատճենը, միայն այն տարբերությամբ, որ մոդելը հարյուր հիսուն անգամ իսկականից ավելի փոքր կլինի:

Վոլգայի հունով հսկայական քանակությամբ ջուր է հոսում: Կույբիշևյան հիդրոհանգույցի ամբարտակը պետք է միլիոնավոր տոննա ջրային զանգվածի դիմանա: Դրա համար էլ ամեն ինչ պետք է սկզբից նախատեսել, հաշվել, ուսումնասիրել: Այստեղ, արհեստական Վոլգայի նոր հունի մեջ փորձնական ճանապարհով պետք է հետազոտվի ջրային հոսանքի շարժումը: Մոդելը կլինի մի մեծ ջրային լաբորատորիա: Փորձերի բոլոր տվյալները, որոնք կստացվեն այդ լաբորատորիայում, կօգտագործեն հիդրոկայանի շինարարները և շահագործողները:



Ավտոդետալ գործարանի գործիքային ցեխի ստախանովական խառատ Խաչիկ Փափազյանը Կոմունիզմի կառուցումների համար դետալներ պատրաստելու նոր առաջադրանք է ստանում:




Էլեկտրամեքենաշինական գործարանի տրանսֆորմատորների ցեխի ստախանովական բանվոր Նորիկ Մովսիսյանը խաղաղության ներքափոխի ժամանակ:




(Հատված)

*Ս. ՄԱՐՇԱԿ*
(Ստալինյան մրցանակի լաուրեատ)

*Նկ. Պ. ՄԱԼԱՅԱՆԻ*

Սիբիրի մամռոտ տունդրաներից դեն,
Սառուցյալ գրկում հեռու հյուսիսի,
Ուր չկա ո՛չ գյուղ, ո՛չ քաղաք, այնտեղ
Կա մի անանուն, անհայտ մի կղզի:
Սառցալեռներ են շուրջը վիթխարի,
Եվ ալիքներն են ափերին բախվում:
Այդ անհայտ կղզում կա մի հյուղ փո՛քրիկ
Երկու ընկեր են այնտեղ բնակվում:
Նրանք բքի տակ, ձյան մեջ բևեռի
Գիշեր ու ցերեկ գործում են, տքնում,
Գրքեր են կարդում, իսկ պարզ օրերին
Հրացաններով որսի են գնում:
Բայց դժբախտություն պատահեց մի օր.
Նրանցից մեկը ընկավ վիրավոր:
Ի՞նչ եղավ. փամփո՞ւշտն էր դավաճանել.
Ո՞վ գիտե: Գտավ ընկերը նրան՝
Զառանցանքի մեջ ընկած կիսամեռ,
Տնակից հեռու, ձյան թմբի վրա:

Մինչև լույս նստեց ընկերը կողքին,
Վանելով տանջող քունը աչքերի.
Ծածկում էր, սառույց դնում ճակատին,
Սակայն չփոխվեց վիճակն հիվանդի:
Մինչև լույս տանջվեց հիվանդն անկողնում:
Ջարդվող սառույցն էր դրսում աղմկում,
Որոտն էր լսվում ալեկոծության:
Նա երազ տեսավ... Մեկնում է Մոսկվա,
Իջնում է, փռվում խոտերի վրա,
Լսում անտառի երգը դուրեկան:

Հիվանդն սթափվում և հյուղն է տեսնում:
Նստած հեռագրի ապարատի մոտ,
Մոսկվայի հետ ընկերն է խոսում,
Բժիշկ է կանչում ահա տագնապով:

«Տա՛-տա՛-տա՛-տա՛-տա՛-, տա՛-տա -տա՛-
տա՛-տա -»—
Ազդանշաններն են հնչում անվերջ.
—Լուրջ վերք է, և կա կուրության վտանգ...
Անհնարին է կատարել վայրէջք...

—Դժվարին գործ եմ ձեզ հանձնարարում,—
Ջահել բժշկին իր պետն է ասում,—
Ահա քարտեզը, մարշրուտը ահա.
Հեռավոր հյուսիս դուք պիտի թռչեք
Եվ պարաշյուտով կատարեք վայրէջք՝
Բաց օվկիանոսի, սառույցի վրա:
— Պատրա՛ստ եմ,— ասաց կապիտանն
հանգիստ.
Ապա նայեց նա հուզմունքով սրտի
Քարտեզի վրա փռված օվկիանին,
Որտեղ պարզ գրված էր՝ «Սառցե կղզի»:



Պատրաստ է արդեն բժիշկը ջահել:
Ընտելացել է նա բուքերի.
Քանի անգամ է երկնքից իջել,
Օգնել ջոկատին պարտիզանների:
Ամեն տեղ արյուն ու մահ է տեսել,
Բայց եղել է միշտ խիզախ, անվեհեր,
Քանի անգամ է նա դարան մտել
Պարտիզանական ջոկատների հետ...

Սիբիրը արդեն մնաց ետևում:
Մշուշի բրդոտ մուշտակը հագին՝
Մերկ հեռաստանն է փռված ներքևում,
Սպիտակ դաշտը օվկիանոսային:
Հողի ոչ մի շերտ չկա ներքևում.
Չորս կողմ ամայի, մեռած հարթություն...
Բայց ահա հանկարծ երևաց հեռվում
Ծխի բարձրացող ամպը կապտավուն:

Սառույցների մեջ ցուրտ հեռաստանի
Փայլեց խարույկը ազդանշանի:
Ինքնաթիռն արդեն պտույտ է գործում
Սառցալեռների ու ջրի վրա,
Խաղալիքի չափ հյուղն է երևում
Եվ փոքրիկ մի մարդ՝ ձեռքը վեր պարզած:
Այս անապատում սառույցի ու ձյան
Այդ մարդն այնքա՜ն է անպաշտպան, անզոր.
Բայց մայր երկրին է կանչել օգնության.
Եվ օգնության է նա եկել այսօր:

Հրահանգի է բժիշկն սպասում.
Հասել է արդեն ռոպեն վայրէջքի:
Նա դուրս է գալիս ու վայր է ցատկում,
Ձգում է օղակն իր պարաշյուտի:
Ձգեց օղակը և օդում կախվեց:
Բացվեց պարաշյուտն ինչպես մեծ վրան,
Սակայն ինչ-որ բան հանկարծ վայր քաշեց,
Եվ գահավիժեց նա քարի նման:

Մի ամբողջ կյանք է վտանգի ռոպեն...
Հասկացավ իսկույն բժիշկը ջահել,
Որ պատռված է պարաշյուտն արդեն.
Պետք է պահեստի օղակը ձգել:
Նա մի շարժումով աղետը կանխեց,
Բացվեց արծաթյա վրանը կրկին,
Եվ մի հզոր ուժ օդում կանգնեցրեց
Ներքև սլացող խիզախ բժշկին:

Կղզուց շան հաչոց ականջին հասավ,
Բայց նրան քամին քշեց ու տարավ,
Կղզու փոխարեն օվկիանոս ընկավ...
Վտանգի ժամին պարաշյուտն օգնեց,
Սակայն թշնամի դարձավ օվկիանում:
Բժիշկը երկար դես ու դեն նետվեց,
Սակայն ազատվել չէր կարողանում:
Հոգնած ու ջարդված նա ափ դուրս եկավ,
Կուլ տվեց աղի ջուրը օվկիանի,
Պարաշյուտն իր հետ քարշ տալով տարավ.
Պետական գույք է, մի՞թե կթողնի...

Դրված է ահա փոքրիկ սեղանին
Փայլփլուն մի կոնք՝ գործիքներով լի:
Ջահել բժիշկը՝ խալաթը հագին՝
Վիրահատում է աչքը հիվանդի:
Անցան վայրկյաններն անհուն հուզմունքի,
Սակայն ընթացքում այդ վայրկյանների
Փրկեց ընկերը աչքն իր ընկերոջ,
Եվ ահա նրան է նայում սիրով:
Կատերը կգա ութ շաբաթ հետո,
Ինքնաթիռի մոտ հյուրին կտանի,
Ոտքի կկանգնի հիվանդը շուտով
Եվ աշխատանքը կշարունակի:
Կտեսնի երկինքն, օվկիանը կրկին,
Ամեն, ամե՛ն բան, ինչ թանկ է, անգին:
Գոհ է, երջանիկ բժիշկը ջահել,
Որ հողմերն անցել, հյուսիս է հասել...
Գոհ է, երջանիկ, որ նետվել է վար
Բաց օվկիանոսի, սառույցի վրա,
Ուր ընկերոջը փրկելու համար
Ինքը՝ Ստալինն է ուղարկել նրան:

*Թարգմ. Պ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*





# ՓՈՔՐ ՋՈԿԱՏԻ ՄԵԾ ԳՈՐԾԵՐԸ

Վ. ՏԱԼՅԱՆ

Նկ. Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ
Լուսանկ. Վ. ՍԵՎՈՅԱՆԻ

Թումանյանի փողոցի № 18 տան բակում ո՛չ ծառ կա, ո՛չ ծաղկանոց և ոչ էլ շատրվան. բայց այդ փոքր բակում մեծ գործեր է կատարում պիոներական հավաքական ջոկատը։

1950 թվականի սեպտեմբերին էր։ Մի կիրակի օր բակի փոքրահասակ երեխաները համերգ էին կազմակերպել. արտասանում էին, երգում, պարում։ Պատշգամբներում և սանդուղքի վրա հավաքված ծնողներն ու պիոներները սրտանց ծիծաղում էին ու եռանդով ծափահարում։

— Եկեք՝ մենք էլ...— հանկարծ դարձավ ընկերներին Ռազմիկ Աղաջանյանը։

Ճաշից հետո նրանք ներկայացրին «Շունը» պիեսը։ Ներկայացումը վերջացավ։ Շատերը գոհ գնացին տները. բայց դերակատարները նստել էին սանդուղքին ու վիճում էին։ Երկրորդ հարկի պատշգամբում կանգնած նրանց էին նայում մայրերը։ Նրանց մեջ էր նաև Սեդա Աֆրիկյանը։

Տղաների վեճը հետզհետե բորբոքվում էր։ Մեկն ասում էր մյուսին.

— Դու դերդ լավ չկատարեցիր։

Մյուսն էլ, թե՝

— Հա էլի, իբր թե դու լա՜վ կատարեցիր...

Տղաներն սկսեցին ձայները բարձրացնել։ Ծնողները տագնապով նայում էին նրանց և ասում.

— Էլի կկռվե՜ն...

Մինչև այդ օրը երեխաներն անընդհատ դուրս էին թռչում փողոց և այնտեղ գնդակ խաղում։ 47 երեխայից շատ քչերն էին, որ ռեժիմ ունեին ու դասերն էլ կանոնավոր պատրաստում էին։

Սեդա Աֆրիկյանը հաճախ կանգնում էր փողոցի պատշգամբում, տխուր նայում էր սալահատակի փոշու և աղմուկի մեջ խաղացող տղաներին ու ինքն իրեն հարց տալիս՝ «Ի՞նչ անել»։ Մայրերից շատերն էլ էին մտածում այդ մասին։

Սեդան այդ րոպեին էլ նայում էր վիճող տղաներին և ուզում էր կանխել կռիվը։ Եվ նա արագ իջավ բակ, ժպտալով մոտեցավ տղաներին և ասաց.

— Տղանե՛ր, ինձ մոտ եկեք։

Տղաները վեճը դադարեցրին ու մոտեցան Սեդային։



Երևանի Թումանյանի փողոցի № 18 տան երեխաները՝ Սուսաննան, Էդիկը և Գոհարիկը Կիրովի անվան հանգստի պարկում դիտում են բույսերը:



Կարենը, էդիկը, Նելլին և Ռուբիկը շախմատ խաղալիս:

*Սեդան մեկ առ մեկ նայեց դեռ անհանգիստ տղաներին ու հանդարտ ասաց.*

*— Դուք ժամանակը լավ չեք օգտագործում. եկեք այնպես անենք, որ ձեր ամեն մի րոպեն ձեզ համար օգտակար լինի։*

*Տղաներն իրար նայեցին։ Սեդան շարունակեց.*

*— Լավ չի՞ լինի մեր բակում պիոներական մի ջոկատ կազմակերպենք, մի խմբակ...*

*— Ախր մենք ջոկատներ ունենք,— փորձեցին առարկել տղաները։*

*— Այդ ոչի՜նչ,— ասաց Սեդան.— ջոկատ կկազմակերպենք, ներկայացումներ կտանք, էքսկուրսիաներ կգնանք, ֆուտբոլի խաղերը կդիտենք, կինո, թատրոն, ցուցահանդես կհաճախենք...*

*— Շատ լավ կլինի, ընկե՛ր Սեդա,— ոգևորվեցին տղաները։*

*— Այո՛, այո՛,— ուրախացած ծափ տվին աղջիկները։*

*— Ամառն էլ բակային ճամբար կկազմակերպենք, չէ՞,— բորբոքեց Սեդան։*

*Եվ միմյանց ընդհատելով երեխաներն սկսեցին առաջարկներ անել, մեկը մեկին հակաճառել, ասածները պնդել։ Սեդան լռեցրեց նրանց և բարձր դասարանների աշակերտներից մի քանիսի հետ բարձրացավ իր սենյակը։*

*Հենց նույն օրը ցուցակ կազմեցին։ Ցուցակում գրեցին բակի 22 դպրոցականի ու դիմացի բակից էլ մեկին։ Բակային ջոկատ կազմակերպելու լուրը տարածվեց։ Հարևան բակերից երեխաները գալիս էին խնդրում, որ իրենց էլ գրեն։*

*Շուտով Միկիչ Մխիթարյանը և Էդիկ Աֆրիկյանը փոքրիկների խմբակ կազմեցին ու առավոտներն սկսեցին լիցք անել, խաղեր կազմակերպել։*

*Այսպես սկսվեց բակային ջոկատի հետաքրքիր կյանքը։*

*Ցուցակը կազմելու հաջորդ օրը պատի թերթի խմբկոլ ընտրեցին։ Արտյուշան, Մերին, Ռոբերտը, Մարատն ու Գոգան պատրաստվեցին թերթ լույս ընծայել։ Ընտրեցին նաև դաստիարակի օգնականներ՝ Մերիին և Ռազմիկ Աղաջանյանին։ Նրանց պարտականությունն էր՝ դաստիարակի տանը չեղած ժամանակ հետևել լիցքին, ռեժիմի ճիշտ կատարմանը, շախմատային տուրնիր և այլ խաղեր կազմակերպել։*

*— Նրանք իմ իսկական օգնականներն են, ես շա՜տ գոհ եմ,— հպարտությամբ ասում է դաստիարակը։*

*Պատի թերթի առաջին համարը լույս ընծայեցին հոկտեմբերին։ Նյութեր կային կարգապահության խախտողների մասին. նկարել էին ծաղրանկարներ։ Թերթի մյուս համարը նվիրված էր Սովետական Հայաստանի երեսնամյակին։ Եվ այսպես մինչև հիմա պատի թերթի յոթ համար են լույս ընծայել։ Ծավալը մեծացրին, գեղեցկացրին։ Խմբագրական կոլեգիան լույս է ընծայել նաև 8 ֆոտո-թերթ, կազմել են նկարազարդ ալբոմներ։*

*Բակի աղջիկներից շատերը սովորում են Շահումյանի անվան դպրոցում և այդ դպրոցի դասատուները, հատկապես ուսմասվար Արուս Էդիլյանը, մեծ սիրով օգնում են ջոկատի աշխատանքներին։ Արուսն ինքն արդեն երկու զեկուցում է կարդացել։ Եղել են նաև դասախոսություններ՝ մայիսի մեկի, շուրջերկրյա ճանապարհորդությունների, քիմիայի տարբեր թեմաների և այլ նյութերի մասին։*

*Շատ հետաքրքիր արշավներ ու էքսկուրսիաներ է կազմակերպել այդ ջոկատը։ Դրանց մասին համառոտ, բայց առան-*



Բակային ճավաՃական ջոկատի խմբագրական կոլեգիան պատի բերթ է լույս ընծայում: Խմբկոլին օգնում է դաստիարակ Սեդա Աֆրիկյանը:

ծին ջերմությամբ են գրել պիոներներն իրենց հուշատետրում։

Առաջին էքսկուրսիայի վայրը Նոր Զեյթունի անտառն է եղել։ Երեխաները դիտել են ծառերի տեսակները, խաղեր են խաղացել, երգեր են երգել, իսկ երեկոյան զվարթ ու առույգ տուն վերադարձել։ Հետաքրքիր է անցել նաև էքսկուրսիան դեպի Խ. Աբովյանի տուն-թանգարանը, դեպի ապակու և մուրիտի գործարանները։ Ջոկատը Ստալինի մոնումենտ-քանդակի մոտ հանդիպում է ունեցել ճարտարապետ Իսրայելյանի հետ, որը պատմել է նրանց, թե ինչպես ստեղծվեց այդ հոյակապ մոնումենտը։

Ջոկատի պիոներները մինչև հիմա էլ չեն մոռանում դաշտային զբոսանքը Կոմունարների այգում։ Ինչքա՜ն աշխույժ և ուրախ անցավ այդ խաղը, որքա՜ն թարմացան բոլորը։

Այդ օրը Սեդան ինքն սկսեց ձնագնդի խաղալ։ Երեխաները աշխուժացան ու ձմեռային այգին լցրին զնգուն ծիծաղով ու ցնծագին բացագանչություններով։ Խաղից հետո լսեցին զրույց մարզանքի ու լիցքի մասին։ Դահուկները վարելու մեջ աչքի ընկան՝ Արտյուշան, Ռազմիկը, Մարատը և Ռոբերտը։

Սեդան ու իր օգնականները ջոկատը հաճախ տանում են ցուցահանդես։ Նրանք Պիոներների պալատի Լենինի և Ստալինի սենյակում զրույցներ են լսել մեծ առաջնորդների կյանքի մասին։ Պալատի աշխատակից Վ. Պետրոսյանն էլ երկու անգամ եկել է բակ ու խաղեր է կազմակերպել։ Բոլոր երեխաներն էլ ուզում են մասնակցել ջոկատի աշխատանքներին ինչպես պետք է և եթե առաջադրանք չեն ստանում վիրավորվում են։

Ձմռան մի երեկո Սեդա Աֆրիկյանի սենյակն էին հավաքվել մի քանի հարևանուհի. նստել էին վառարանի շուրջը և զրուցում էին։ Հանկարծ շրշյուն լսվեց։ Կանայք նայեցին դռան կողմը և տեսան, որ դռան տակից սենյակ սողաց ծալած մի թուղթ։ Սեդան իսկույն վերցրեց թուղթը և կարդաց։ Պարզվեց, որ այդ նամակը գրել էր Վարդանիկը։ Նա դժգոհում էր, որ մի որևէ գործ չեն տալիս անելու։ Հավաքվածները ծիծաղեցին, բայց ո՛չ Վարդանիկը, ոչ էլ Կառլենը ջոկատից չհեռացան, ինչպես գրել էին նամակների վերջում։

Բակի երեխաներն սպորտն էլ շատ են սիրում։ Ջոկատն ունի վոլեյբոլի և ֆուտբոլի թիմեր։ Նրանք հաճախ մրցումներ են ունենում։ Կա նաև շախմատի խմբակ։

Վերջին տուրնիրը շատ լարված էր. բակի շախմատի չեմպիոնի անունն էին ուզում նվաճել մի քանի հոգի։ Երկար պայքարից հետո հաղթեց Մարատը։

Տարբեր դպրոցներում են սովորում այդ բակի երեխաները. բայց նրանց առաջադիմությանը Սեդան հետևում է այնպես, ինչպես իր տղայի առաջադիմությանը։ Եվ երբ պարզվեց, որ 11 երեխա «4» և «5» գնահատականներով են դիմավորել ուսումնական տարվա վերջին քառորդը, նա ծնողներին ասաց.

— Պետք է պարգևատրել երեխաներին։

Ծնողներն ուրախությամբ համաձայնեցին։ Արտյուշան, Հերմինեն, Մարիետտան և ուրիշները որպես պարգև պատկերազարդ գրքեր ստացան։ Պարգևներ ստացան նաև «2» չունեցողները։ Տարեվերջին էլ այս միջոցով խրախուսվեցին երեխաները։ Ջոկատի աշխատանքի ու պատի թերթի նյութերի հետևանքն այն եղավ, որ հիմա ոչ մի դպրոցական «2» չունի, ոչ ոք փողոցում չի խաղում, անկարգություն չի անում։

*Մոտ մի տարի է, որ Սեդա Աֆրիկյանին երեխաների մեծ մասը «մորաքույր» չի ասում: «Ընկեր Սեդա» հարգանքով ասում են նրանք, ինչպես դպրոցներում՝ իրենց ջոկատավարներին: Նրանք Սեդային սիրում ու հարգում են, ինչպես իրենց ծնողներին:*

*Մայիսյան խաղաղ մի երեկո էր: Երեխաների ձայնը բռնել էր բակ ու փողոց: Նրանց ձայնը հասավ Սեդայի ականջին. նա մտածեց. «Մի՞թե սրանք դաս չունեն. շուտով քննությունները սկսվելու են»: Եվ անլսելի քայլերով դուրս եկավ պատշգամբ:*

*Երեխաներն սկզբում նրան չտեսան: Խաղի եռուն րոպեին Էդիկի աչքն ընկավ պատշգամբին: Նա գնդակը ձեռքերում տարօրինակ ձևով պտտեց և աչքերով ցույց տալով մորը ցածր ձայնով ասաց ընկերներին.*

*—Ընկեր Սեդա՜ն...*

*Մի րոպե հետո բակում ոչ մի դպրոցական չկար: Սեդան շրջեց բնակարանները և տեսավ, որ երեխաները կրկնում էին դասերը: Նա կանխեց ռեժիմի խախտումը: Այսպես էր վարվել նա հաճախ ջոկատի կազմակերպման առաջին օրերին:*

*Թումանյանի փողոցի № 18 տան բակը տեսքով հրապուրիչ չէ. բայց այնտեղ կա մի փոքրիկ ջոկատ, որը մեծ գործեր է կատարում: Գնացեք, տեսեք նրանց՝ այդ եռանդուն պատանիներին և դուք էլ հավաքական ջոկատներ կազմակերպեցեք:*

# ԼԵՌ՛ՆԱՅԻ՛Ն ՀԵՔԻԱԹ

ԳԵՈՐԳԻ ԳՈՒԼԻԱ

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Աբխազիայում, այդ փոքրիկ երկրում, շատ մեծ լեռներ կան: Նրանց կատարները համարյա երկինք են հասնում:

Մի այդպիսի լեռան ստորոտում, Եղջերվի Աղբյուր գյուղում, ապրում էին պապը և թոռը: Պապի անունը Կան էր, իսկ թոռանը՝ Գուդալ: Պապը երկար մորուք ուներ, ձմեռը և ամառը փաթաթվում էր բրդոտ յափնջու մեջ: Փոքրիկ Գուդալը սիրում էր իր ձեռքով շինած աղեղից նետ արձակել. նրա նետերը երբեմն թռչում էին բարձր՝ դեպի կապույտ երկինքը:

Ամեն ինչ լավ կլիներ, եթե Եղջերվի Աղբյուր գյուղում մի քիչ ավելի տաք լիներ: Քամին սառն էր լինում այստեղ. նա փչում էր այնքան ուժեղ, որ արմատից պոկում-հանում էր ցանված եգիպտացորենը և մառղաչ խնձորենիները: Նա պոկում-հանում էր դրանք և տանում՝ հեռո՜ւ-հեռո՜ւ: Եվ Եղջերվի Աղբյուրի բնակիչները առանց եգիպտացորենի և առանց խնձորի էին մնում: Մի անգամ Գուդալը հարցրեց իր պապին.

— Ասա, պապի՛կ, ինչո՞ւ է մեզ մոտ եգիպտացորենն այդպես վատ աճում:

— Որովհետև փչում է Դալանը,— հետևեց պատասխանը:

— Իսկ ինչո՞ւ մենք չունենք մեր խնձորները:

— Որովհետև փչում է Դալանը:

Գուդալը շատ մտածեց ու նորից հարցրեց պապին.

— Ասա, պապի՛կ, իսկ ո՞վ է Դալանը:

Պապը քորեց մորուքը և պատասխանի փոխարեն իր թոռան համար մի այսպիսի երգ երգեց.

— Հսկա լեռան ետևում, սառցե անապատից այն կողմ, ապրում է սարսափելի թշնամին՝ Դալանը. նա ցուրտը քշում է ձորերը, տանում է լեռնային անտառը քամուց... Լեռներում թնդում է փոթորիկը...

Փոքրիկ Գուդալը ուշադրությամբ լսեց երգը, բայց ոչինչ չհասկացավ: Այն ժամանակ պապն իր թոռանը պատմեց մի պատմություն քաջի մասին:

— Այդ եղել է շատ վաղուց,— ասաց պապը,— Եղջերվի Աղբյուրում ապրում էր մի քաջ, որի անունը ոչ ոք չի հիշում: Այդ քաջը փորձեց եգիպտացորեն ցանել, բայց Դալանը արմատով պոկեց: Փորձեց խնձորենի տնկել, Դալանը խնձորենին էլ ոչնչացրեց: Եվ քաջը որոշեց գնալ Դալանի դեմ ու մահացու կռվի մեջ մտնել նրա հետ:

Նա վերցրեց թուրը, հագավ կուռ զրահը և գնաց լեռները: Գնաց նա երեք օր և երեք գիշեր ու վերջապես հանդիպեց Դալանին: Դալանը մեծ էր, շատ մեծ, նրա վրա բրդոտ յափնջի կար, բայց ոչ թե սև, ինչպես բոլորի մոտ, այլ սպիտակ՝ ձյունե: Մորուքն էլ էր սպիտակ, բեղերն էլ: Դալանն ուռցընում էր այտերը և սառասփելի ցուրտ փչում բոլորի վրա: Նրա շնչառությունը սպանում էր կենդանի ամեն բան: Քաջը նետվեց Դալանի վրա: Բայց Դալանը փչեց և մի ակընթարթում քաջին սառցակոշտ դարձրեց: Մինչև այժմ այդ կոշտը կանգնած է լեռներում...

Գուդալը խղճաց քաջին: Տղան բարկացավ Դալանի վրա: Բայց ինչ կարող էր անել՝ Դալանը հեռու լեռներում էր ապրում...

Գուդալը մտածկոտ քայլում է և հանախ նայում հովտին: Իսկ հովիտը ձգվում է մինչև Սև ծովը: Ինչ ասես, որ չկա այդ հովտում: Է՛լ լիառատ եգիպտացորեն, է՛լ շատ խնձոր: Այնտեղ աճում են և՛ կիտրոնը, և՛ համեղ մանդարինը, սլացիկ արմավենիները կանգնած են ոսկե միմոզայի կողքին. տաք արևը փայլում է երկնքում: Այդ գեղեցիկ հովտում ապրում էր մի տղա: Նրա անունն էր Դաուդ: Նա սիրում էր և՛ արևը, և՛ ծովը: Դաուդը մի աշխատասեր և ուրախ տղա էր: Ահա նրա սիրած երգը.

— Աճիր, կիտրոն, հասունացիր, մի՛ ծուլանա, իմ բարեկամ. այդ արևը քոնն է, և տաքությունն էլ քոնն է: Մի՛ ծուլանա, իմ բարեկամ. ավելի խոր արմատներ գցիր, աճիր, կիտրո՛ն, հասունացիր...

Նա երգում էր այս երգը, աշխատելով այգում:

Մի անգամ Դաուդը փխրեցնում էր կիտրոնի ծառի շուրջը եղած հողը: Հանկարծ տեսավ անծանոթ տղային:

— Ո՞վ ես դու,— հարցրեց Դաուդը:

— Ես Գուդալն եմ,— պատասխանեց անծանոթ տղան:

— Դու ի՞նչ կարող ես անել, Գուդալ:

Գուդալը պատասխանի փոխարեն ձգեց իր ձեռքով պատրաստած աղեղի լարը և նետը երկինք արձակեց: Վերևում թռչում էր ուրուրը: Նետն անցավ նրա թևի միջով և գիշատիչը գետին ընկավ:

— Ապրե՛ս,— ասաց Դաուդը:



— Իսկ դու ի՞նչ կարող ես անել,— հարցրեց Գուդալը:

— Ես կարող եմ կիտրոն և մանդարին տնկել:

— Ա՛յ թե քաջն ե՛ս,— բացագանչեց Գուդալը:

Նա պատմեց Դաուդին, թե ով է ինքը և որտեղացի, որն է Եղջերվի Աղբյուր գյուղը. պատմեց սառասփելի Դալանի մասին, որ ապրում է լեռներում: Դաուդը լսեց Գուդալին և ասաց.

— Ուրեմն, դժվա՞ր է ձեզ մոտ, Եղջերվի Աղբյուրում:

— Շա՜տ,— խոստովանեց Գուդալը:

Դաուդն այնպիսին չէր, որ նրան դժվարությունները վախեցնեին: Նա ասաց.

— Մենք կկոտրենք ձեր Դալանի ատամները:

— Բայց նա ատամ չունի,— բացատրեց Գուդալը:

— Այն ժամանակ կպոկենք մորուքը:

Դաուդը շատ դուր եկավ Գուդալին: Նըրանք շարժվեցին դեպի լեռները, դեպի Եղջերվի Աղբյուր գյուղը: Եվ ահա թե ինչ վերցրեց Դաուդն իր հետ. մի քիչ կիտրոնի սերմ, մի քիչ մանդարինի սերմ, մի քիչ էլ խնձորի սերմ:

— Մենք սրանք կցանենք,— բացատրեց Դաուդը,— կաճեն, և փոքր հասակից ցրտին

կսովորեն: Նրանց համար Դալանը սարսափելի չի լինի:

Հենց որ տղաները գյուղ եկան, իսկույն փխրեցրին հողը և սերմերը ցանեցին: Ծեր պապը նայում էր նրանց, զարմանում, թեռահավատ օրորում գլուխը և երգում հին երգը՝ սարսափելի Դալանի մասին:

Ձմռան ամիսներն անցան: Եկավ գարունը, օրերը տաքացան: Հողից բարձրացան հնձուշ, կանաչ ընձյուղները: Գուդալը և Դաուդը իրենց փոքրիկ ու մատղաշ ծառերին նայելով չէին կշտանում: Բայց ահա Դալանը փչեց, կատաղի հողմը բռավ և արմատահան արեց քնքուշ ընձյուղները, կարծես թե նրանք չէին էլ եղել: Գուդալը և Դաուդը տխրեցին. ի՞նչպես վարվել Դալանի հետ... Իսկ պապն ասաց նրանց.

— Այն ի՞նչ է կանաչին տալիս այնտեղ, փոքրիկ սոճու մոտ:

Գուդալը և Դաուդը միաձայն գոչեցին.

— Դա կիտրոն է. ինչպե՞ս է, որ նա անվնաս է մնացել:

Այո, դա կիտրոնի մատղաշ մի ծառ էր: Անվնաս էր մնացել նա շատ պարզ պատճառով. ոչ մեծ մի սոճի պաշտպանել էր նրան Դալանի սառը շնչից:

— Այդ սոճին,— ասաց պապը,— ավելի ուժեղ է այն քաջից, որը Դալանին հաղթել չկարողացավ:

— Ճիշտ է,—համաձայնեցին երեխաները:

Եվ նրանք շատ սիրեցին այդ փոքրիկ սոճուն:

— Իսկ ի՞նչ կլինի, պապի՛կ,— ասաց թոռը,— եթե մենք այդպիսի շատ սոճիներ տնկենք:

Պապը մտածեց-մտածեց և ասաց.

— Դալանի համար վատ կլինի:

Գուդալը և Դաուդը ուրախացան և ծափ տվին:

— Մենք Եղջերվի Աղբյուրի շուրջը սոճիներ կտնկենք,— որոշեցին տղաները:

Աստծը՝ արված էր: Նրանք վերցրին ֆլունգը ու բահը և գնացին սոճիների համար փոսեր փորելու: Գուդալը ֆլունգով հարվածեց. հարվածն արձագանք տվեց տարբեր կողմերում:

— Դա արձագանք է,— ասաց Գուդալը:

Նա ֆլունգը նորից բարձրացրեց, բայց արդեն հարվածները սկսեցին տեղալ մեկը մյուսի ետևից: Կարծես էլի ինչ որ մեկը ֆանդում էր հողը:

— Ո՛չ, դա արձագանք չէ,— ասաց Դաուդը:

Գուդալը և Դաուդը բարձրացան ժայռի վրա: Եվ ի՞նչ տեսան: Ամբողջ սարը ծածկված էր երեխաներով: Նրանք փոսեր են փորում. Բայց ոչ բոլորն են փորում: Ոմանք փորում են, մյուսները խիտ անտառից հանված սոճիներ են բերում, իսկ երրորդները ծառերն են տնկում:

— Հե՜յ— գոչեց Գուդալը,— դուք ի՞նչ եք անում:

— Պայքարում ենք Դալանի դեմ,— պատասխանում են ծառ տնկողները:

— Դալանին վերջ կլինի,— ասում են մյուսները:

Գուդալը և Դաուդը վերադարձան իրենց փոսերի մոտ:

— Ուրեմն, մենք մենակ չե՞նք,— արտասանեց Գուդալը:

— Ավելի լավ,— ասաց Դաուդը:

Ու երբ նորից եկավ գարունը և նորից օրերը տաքացան, Եղջերվի Աղբյուրը անճանաչելի դարձավ: Երիտասարդ անտառը գյուղը շրջապատեց և այլևս Դալանի սառը շնչի համար ճամփա չկար: Իսկ տաքության մեջ փառավորապես աճում էին կիտրոնի, մանդարինի և խնձորի ծառերը: Գուդալը և Դաուդը հիանում էին մատղաշ ծառերով: Ծեր պապը դեռ ոչ մի կերպ չէր կարողա-



նում հավատալ. դա Եղջերվի Աղբյո՞ւրն է, թե ինչ որ մի ուրիշ, հեքիաթային գյուղ։

— Կարծես հեքիաթ է, իմ երեխանե՛ր,— ասաց նա,— կարծես հեքիաթ է։

Եվ պապն այլևս սարսափելի Դպլանի մասին չերգեց։ Ոչ,նա հորինեց նոր երգ, որի մեջ խոսվում էր արևի մասին, գարնան մասին, և քաջ տղաների՝ Գուդալի ու Դաուդի մասին։

Այս ամենը պատահել է այնտեղ, որտեղ լեռները հասնում են մինչև աստղերը, որտեղ երջանիկ ապրում, կյանք են վայելում Գուդալն ու Դաուդը, ծերունի պապը և շատ ուրիշները։

*Թարգ. Լ. ԱՍՄԱՐՅԱՆ*




*Մ. ՄԱԴԱԹՅԱՆ, Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ*
*Նկ. Մ. ՏԻՐԱՏՈՒՐՅԱՆԻ*

*Տղաներն ուրախ զրուցելով անցնում էին «Պիոներ» կինո-թատրոնի մոտով։ Հանկարծ Արտուրը կարդաց՝ «Մենք Կրոնշտադտից ենք»։*

*— Հրաշալի նկար է,— ասաց նա.— երկու անգամ տեսել եմ, բայց էլի պետք է գնամ։*

*Երեկոյան նրանք նստած էին դահլիճում։ Պետք էր տեսնել, թե ինչպե՞ս էին հուզված։ Նրանց ոգևորում էին հերոս կրոնշտադտցիները, որոնք արիաբար պաշտպանում էին մեր Հայրենիքը և խորին ատելությամբ լցվում դեպի նրա թշնամիները։*

*— Տղանե՛ր, ես ծովային կդառնամ։*

*— Ես էլ, ես էլ,— ձայնակցեցին նրան մյուսները։*

*Այդ օրվանից տղաները որոշեցին սովորել պատանի նավաշինարարների խմբակում։ Նրանք դիմեցին Պիոներների պալատի նոր բացված ծովային մոդելիզմի խմբակի ղեկավար Խալաթյանին։*

*Եվ երեք ընկեր սկսեցին հաճախել պատանի նավաշինարարների խմբակի պարապմունքներին։ Արտուրը, Էմիլը, Գրիգորը գտան իրենց սիրելի զբաղմունքը։*

*Երկու տարի է անցել այդ օրվանից։ Որքա՞ն շատ բան են սովորել նրանք։ Պատանի նավաշինարարների խմբակն են հաճախում հիսունից ավելի երեխա։*

*Այն սենյակում, որտեղ աշխատում են երեխաները կան շատ գործիքներ, էլեկտրական սղոց, դազգահներ և զանազան նյութեր։ Կաբինետը, կարծես մի իսկական նավաշինարան լինի։ Այդտեղ դրված են բազմաթիվ առագաստավոր, ջրասույզ, գրծային, տորպեդային և այլ տեսակի նավերի ավարտված և կիսավարտ մոդելներ։*

*Այս տարի Արտուրը սեփական գծագրերով պատրաստել է «Հոկտեմբերյան Ռևոլուցիա» գծանավի մոդելը։ Այդ նավը շարժվում է էլեկտրական մոտորով և ակումուլյատորներով։ Նավն ունի աշտարակներ, փրկարար մակույկներ, լուսարձակներ, թնդանոթներ և նույնիսկ ազդանշանային դրոշակներ։ Արտուրն այժմ պատրաստում է սուզանավի մեկ ու կես մետրանոց մոդել, որը ավտոմատ կերպով պետք է սուզվի և դուրս գա ջրի տակից։*

*Էդիկ Չիրիմանովը աշխատում է մի մոդելի վրա, որի երկարությունը լինելու է մեկ մետր 65 սանտիմետր։ Նա նույնպես ջրի մեջ շարժվելու է էլեկտրական մոտորով։*

*Պատանի նավաշինարարները Կոմսոմոլի անվան պարկի ջրային ավազանում և Սևանա լճում շատ են փորձարկել իրենց մոդելները։ Նրանք անցյալ տարի Մոսկվայում մասնակցեցին Համամիութենական առաջին*

մրցումներին և էմիլի գրահանավի ու Գրիգորի առագաստանավի մոդելները գրավեցին 2-րդ տեղը։

Այժմ պատանի նավաշինարարները մեծ եռանդով պատրաստվում են Համամիութենական երկրորդ մրցումներին։ Ռազմածովային նավատորմի օրը պատանի նավաշինարարների խմբակը կազմակերպելու է մոդելների ցուցահանդես, մրցումներ և հանդիպում ծովայինների հետ։



# ՈՒԺԻ ԵՎ ԳԵՂԵՑԿՈՒԹՅԱՆ ԴՊՐՈՑԸ

Գ. ԱՌԱՔԵԼՅԱՆ

Լուսանկ. Վ. ՍԵՎՈՅԱՆԻ

Ընդարձակ ու լուսավոր դահլիճից լսվում է դաշնամուրի նվագը։ Գեղեցիկ քայլերով սկսում են քայլել պատանի ֆիզկուլտուրնիկները։ Նրանց կրծքերին կապույտ էմբլեմաներ կան՝ «ԵՔՍԴ» մակագրությամբ։ Տղաների խումբը մի քանի շրջան կատարելուց հետո կանգ է առնում պտտաձողի մոտ։



Երևանի Մանկական սպորտդպրոցի մարմնամարզական խմբակի պարապմունքը։ Զուգափայտի վրա վարժություն է կատարում Ժասմենա Մելիքումյանը։

Սկսվում է մանկական սպորտ դպրոցի մարմնամարզական խմբակի պարապմունքները։ Մարզիչ Կիմ Հովհաննիսյանը ուշի ուշով հետևում է պատանի մարմնամարզիկների ամեն մի շարժմանը։ Պտտաձողի վրա է Մարատ Իսկանդարյանը։ Մարատը փորձում է այն վարժությունը, որ ինքը պետք է կատարի առաջիկա մրցումների ժամանակ։ Ապա նա փորձում է շրջադարձ թռիչք կատարել, բայց չի հաջողվում։ Մարատը կրկնում է երկրորդ անգամ, դարձյալ անհաջող։

— Ոչինչ չի ստացվում,— գործիքի վրայից իջնելով ասում է նա։

— Դժվարությունից հուսահատվել չի կարելի,— մոտենալով Մարատին ասում է մարզիչ Հովհաննիսյանը,— պետք է թափ առնել և ոտքերը վերև բարձրացնելով միանգամից շրջադարձ կատարել։ Մարատը նորից է փորձում։ Այս անգամ մի քիչ հաջողվում է։

— Հիմա արդեն կկարողանաս, փորձի՛ր,— հաստատ ասում է մարզիչը։

Եվ ճիշտ էր, այս անգամ Մարատը ուժեղ շարժումով ոտքերը վեր է բարձրացնում և շրջվելով թռչում։

— Շատ լավ թռիչք էր,— հիացած բացագանչում են ընկերները։

Մարատից հետո վարժություններ են կատարում նաև մյուս պատանի մարմնամարզիկները։ Մարզիչը նշում է ամեն մեկի թույլ տված սխալները և ցույց տալիս ճիշտ կատարելու ձևերը։

Մանկական սպորտ դպրոցի մարմնամարզիկներին ճանաչում են ոչ միայն Երևանում ու ռեսպուբլիկայում, այլև մեր մեծ Միության մեջ։ Նրանք ռեսպուբլիկայի հավաքական թիմի կազմում շատ անգամ են մասնակցել Սովետական Միության առաջնության մրցումներին և պատվավոր տեղեր գրավել։

Դպրոցի սաներից շատերն այժմ մեր ռեսպուբլիկայի ուժեղ մարմնամարզիկներն են։ Այստեղ են սովորել ՍՍՌՄ սպորտի վարպետ Ջավեն Մաթևոսյանը, ռեսպուբլիկայի և Երևանի չեմպիոններ՝ Դեզդեմոնա Մկրտչյանը, Ալյոշա Հովհաննիսյանը, Ալբերտ Ազնաուրյանը, Լարիսա Ազատյանը և ուրիշները։ Դպրոցի մարզիչների մեծ մասն էլ նույն դպրոցի սաներն են։ Երիտասարդ մարզիչներ Կիմ Հովհաննիսյանը, Ալբերտ Սարգսյանը, Բորիս Սեյրանյանը և ուրիշները իրենց սպորտային հարուստ փորձը մեծ սիրով հաղորդում են սկսնակ մարմնամարզիկներին, օգնում են նրանց լավագույն ցուցանիշների հասնելու։

Դպրոցի մարմնամարզիկների թիմը 4 տարի անընդհատ նվաճում է ռեսպուբլիկայի չեմպիոնի կոչումը և փոխանցիկ գավաթը։



Ահա բռնցքամարտության ռինգը։

Պատանի բռնցքամարտիկներն ուշադրությամբ հետևում են ռեսպուբլիկայի չեմպիոն, մարզիչ Մամիկ Հախումյանի վարժություններին։ Փորձված սպորտսմենը բացատրում է հարձակողական և ակտիվ պաշտպանական մարտ մղելու ձևերը։ Ապա սկսվում է վարժական մարտը։

Ռինգ են դուրս գալիս պատանի բռնցքամարտիկներ՝ Ջեպիկ Հովհաննիսյանը և Լենդրոշ Հակոբյանը։ Սկզբում հարձակվում է Լենդրոշը։ Նա մարզիչի օրինակով կարողանում է հարմար մոմենտներ ստեղծել աջ ձեռքով հարվածելու համար։ Սակայն նրա հակառակորդը խելացիորեն պաշտպանվում է, ճարպիկ կերպով խույս տալիս հարվածներից և հարձակվում հարմար ժամանակ։

— Ինչո՞ւ Ջեպիկը չի պաշտպանվում,— ասում է տղաներից մեկը։

— Ջեպիկը շատ ճիշտ է անում,— պատասխանում է մարզիչը,— պաշտպանությունը միշտ պետք է ակտիվ լինի, հարկավոր է հակառակորդին հակահարվածի վտանգի տակ պահել։

Քիչ հետո սկսում է հարձակվել Ջեպիկը, այս անգամ ակտիվ կերպով պաշտպանվում է Լենդրոշը։

Նրանցից հետո ռինգ են դուրս գալիս մյուս զույգերը։

— Մեր բռնցքամարտիկները նույնպես լուրջ հաջողություններ ունեն,— ասում է դպրոցի դիրեկտոր ընկեր Վ. Աբրահամյանը,— վերջին մրցումների ժամանակ Կառլեն Շահգելդյանը հաղթելով իր բոլոր հակառակորդներին նվաճեց ռեսպուբլիկայի չեմպիոնի կոչումը, իսկ թիմը մեծահասակների մեջ գրավեց 3-րդ տեղը։ Նա հաղթեց այնպիսի կոլեկտիվների, ինչպիսիք են «Դինամոն», «Սպարտակը», «Նաուկան» և «Պիշչևիկը»։

Լավ արդյունքների են հասել նաև մանկական սպորտ դպրոցի բասկետբոլիստները։ Ռեսպուբլիկայի լավագույն մարզիչներից մեկի՝ Թոմիկ Մուրադյանի ղեկավարությամբ մի տարվա ընթացքում պատանի բասկետբոլիստները կարողացան նվաճել Երևանի չեմպիոնի կոչումը։ Խմբակի սպորտսմեններ Վիգեն Ալխազյանի, Դնեպր Ավագյանի, Էդիկ Դանիելյանի, Յուրիկ Պրիստյագինի և մյուսների խելացի ու ճարպիկ խաղը դիտողին հիացմունք է պատճառում։

Սպորտ դպրոցում հաջողությամբ գործում են սուսերամարտի, թեթև ատլետիկայի, ակրոբատիկայի, ֆուտբոլի, ըմբշամարտի և թենիսի խմբակները։ Այդ խմբակներում մարզվող պատանիներից և աղջիկներից շատերը սպորտային լավագույն ցուցանիշներ ունենալու համար պարգևատրվել են դիպլոմներով, պատվոգրերով և մրցա-



Բռնցքամարտիկները պարապմունքի ժամին:

նակներով: Դպրոցն այժմ սպորտային 29 դիպլոմ ու պատվոգիր ունի: Սովորող 450 պատանի սպորտսմեններից շատերը դարձել են սպորտային կարգայիններ: Նրանց բոլորի կրծքի վրա փայլում է «Պատրաստ Աշխատանքի և Պաշտպանության» կրծքանշանը:

Երևանի քաղաքային ժողկրթբաժնի մանկական սպորտ դպրոցը սպորտային այսպիսի լուրջ հաջողություններով է դիմավորում իր հիմնադրման տասնամյակը:




Պ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

Նկ. Մ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ

Անսպասելի պայթյունից շատերը ցնցվեցին: Պայթյունը սև քող իջեցրեց տասներեքամյա Լև Սեմյոնովիչ Պոնտրյագինի աչքերին:

— Ափսո՜ս երեխա,— ասացին շատերը: Աշխույժ, ուրախ և աշխատասեր երեխան տեսողությունից զրկվեց:

Անցան օրեր: Երեխան փորձեց երաժշտությամբ զբաղվել, հաջողություն չունեցավ: Բայց նա, նաման

էր, կամքի մեծ ուժի տեր: Եվ նա սկսեց սովորել: Նրան շատ էր գրավում թվերի աշխարհը: Ընկերներն էլ էին խորհուրդ տալիս շարունակել ուսումը:

Լև Սեմյոնովիչի ամենահավատարիմ ընկերը՝ մայրն էր: Մայրը գրագետ դերձակուհի էր: Սկսեց որդու հետ դպրոց գնալ ու գալ, որդու համար այնպիսի գրքեր կարդալ, որոնք իրեն բոլորովին չէին հետաքրքրում: Մայրը չէր էլ հասկանում, բայց կարդում էր: 16 տարեկան Պոնտրյագինը մոր և ընկերների օգնությամբ 1925 թվին վերջացրեց միջնակարգ դպրոցը: Այդ ժամանակ նա մաթեմատիկայից շատ ավելի բան գիտեր, քան իր ընկերները:



Լև Սեմյոնովիչ Պոնտրյագինն ապրում էր աշխարհի գիտության կենտրոնում՝ Մոսկվայում: Նա իր ընդունակությունները ցույց տալու համար պետք է համալսարան ընդունվեր:

Արտասովոր բան. կույրը համալսարանական լսարանում. մի՞թե նրան կընդունեն: Բայց Մոսկվայի Պետական համալսարանի ֆիզիկո-մաթեմատիկական ֆակուլտետն իր դռները լայն բացեց այդ ընդունակ երիտասարդի առաջ: Եվ դարձյալ մայրն էր որդուն համալսարան տանում ու բերում, նրա համար գրքեր կարդում: Նրանք միասին նույն նստարանին էին նստում, դասախոսություն լսում: Որդին հափշտակված կլանում էր դասախոսի խոսքը, իսկ մայրը գրանցում էր այն բոլորը, ինչ որ պետք էր որդուն: Տանը, մայրը որդու համար կարդում էր մաթեմատիկական բարդ գրքեր: Իր արտասովոր ընդունակությունների շնորհիվ, նա աչքի է ընկնում համալսարանում:

1927 թվին տասնութ տարեկան հասակում Պոնտրյագինը գրեց իր առաջին գիտական աշխատությունը, որը լույս տեսավ մաթեմատիկական ամսագրում:

Պոնտրյագինը սկսեց զբաղվել մաթեմատիկական ամենաբարդ, մինչև այդ չլուծված հարցերով: Դրանցով նրանից առաջ զբաղվել էին հայտնի մաթեմատիկոսները՝ Լոմոնոսովը, Էյլերը և շատ շատերը: Պոնտրյագինը լուծեց աստղագիտության, մեխանիկայի ու ֆիզիկայի մի շարք կարևոր հարցեր: Նա ստեղծեց տոպոլոգիական հանրահաշիվը (տոպոլոգիան բարձրագույն երկրաչափության ճյուղերից մեկն է): Մաթեմատիկայի այդ բնագավառում Պոնտրյագինի աշխատությունն առանձին գրքով լույս տեսավ 1938 թվին: Այդ գիրքն անմիջապես թարգմանվեց արտասահմանյան շատ լեզուներով: Մեծ գիտնականի աշխատությունները 20-րդ դարի մաթեմատիկայի նվաճումներից էին:

Պոնտրյագինը վառ հայրենասեր է: Նա բարձր պահեց և զարգացրեց ռուս մեծ մաթեմատիկոսների՝ Լոբաչևսկու և մյուսների ստեղծած տրադիցիաները:

Հայրենական պատերազմի տարիներին Պոնտրյագինը շատ ուրիշ մաթեմատիկոսների հետ միասին աշխատում էր երկրի պաշտպանության համար:

Պոնտրյագինը երիտասարդ էր: Նա Մոսկվայի համալսարանը վերջացնելուց երեք տարի հետո՝ 1932 թվականին 24 տարեկան հասակում ստանում է Մոսկվայի համալսարանի պրոֆեսորի կոչում: 1939 թվականին ընտրվում է ՍՍՌՄ Գիտությունների Ակադեմիայի թղթակից-անդամ: Նա այժմ էլ ապրում և աշխատում է Մոսկվայում:

Պոնտրյագինը Ստալինյան մրցանակի լաուրեատ է: Նա պարգևատրվել է «Աշխատանքային Կարմիր Դրոշի» և «Պատվո Նշան» շքանշաններով:

Պոնտրյագինի օրինակը ցույց է տալիս, թե մարդը ինչպես կարող է բարձրանալ սովետական պայմաններում, իր աշխատասիրության, համառության և գիտության հանդեպ ունեցած սիրո շնորհիվ:






*Նկ. Կ. ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆԻ*

Անհավատալի է թվում, որ փայտը կարելի է մետաքս դարձնել: Տարօրինակ է, բայց այդպես է:

Ոչ հեռու անցյալում մարդը կարողանում էր փոխել միայն նյութի ձևը, իսկ տեսակները՝ ոչ: Այժմ մարդը կարողանում է մի նյութից նոր նյութեր ստանալ: Օրինակ, փայտից՝ արհեստական մետաքս: Բայց փայտը մինչև մետաքս դառնալը հետաքրքիր ճանապարհ է անցնում:

Փայտը տաշեղ են դարձնում, հատուկ կաթսաների մեջ խառնում են մոխրաջրին և 4—5 մթնոլորտ ճնշման տակ եփում: 20—25 ժամ եփելուց հետո, փայտի բոլոր մասերը լուծվում են մոխրաջրի մեջ, իսկ բջջանյութը՝ ոչ: Զանազան քիմիական նյութերի օգնությամբ զտված բջջանյութը մշակում են և նրանից թանձր լուծույթ են պատրաստում: Այդ լուծույթը հատուկ սարքերի միջոցով, մանր անցքերով, դուրս են մղում վաննայի մեջ: Այնուհետև վաննայից լուծիչը հեռացնում են: Բջջանյութը անջատվում է բարակ և փայլուն թելերի ձևով:

Գոյություն ունի արհեստական մետաքսի մի քանի տեսակ՝ պղնձամոնիակային, վիսկոզային, նիտրատային, ացետատային: Պղնձամոնիակային մետաքս ստացվում է այն ժամանակ, երբ բջջանյութը լուծում են պղնձի հիդրօքսիդի ամոնիակային լուծույթում: Երբ բջջանյութը մշակում են ալկալիով և ծծմբածխածրնով և ապա լուծում ալկալու մեջ, ստացվում է մեղրի պես թանձր լուծույթ: Այդ լուծույթը կոչվում է վիսկոզ: Վիսկոզից ստացվում է վիսկոզային մետաքսը: Նիտրատային մետաքս ստանալիս բջջանյութը մշակում են ազոտական թթվով և ապա լուծում սպիրտի ու եթերի խառնուրդի մեջ: Ացետատային մետաքս ստանալիս, բջջանյութը մշակում են քացախաթթվով և քացախ ալդեհիդով, ապա լուծում սպիրտի մեջ:

Արհեստական մետաքսի արտադրության ամենատարածված եղանակը վիսկոզային եղանակն է. նրա արտադրությունը ամենապարզն է: Վիսկոզային մետաքսը բնական մետաքսից տասն անգամ էժան է: 1948 թվականին ամբողջ աշխարհում արտադրված է 497 միլիոն 600.000 տոննա վիսկոզային մետաքս:

Մեկ խորանարդ մետր փայտից ստացվող արհեստական մետաքսյա թելից կարելի է պատրաստել՝ 4000 զույգ գուլպա կամ 1500 մետր գործվածք:

Բնական մետաքս արտադրող շերամը շատ քիչ մետաքս է տալիս: Նա իր ամբողջ կյանքում հյուսում է միայն կես գրամ մետաքսյա թել. իսկ մեխանիկական «շերամը» (մեքենան) օրական կես տոննայից ավելի մետաքս է արտադրում:

*Ա. ԱԹԱՆԱՍՅԱՆ*





# ԺԱՄԱՆՑ

Նկ. Տ. ՍՅՈՒԴՋՅԱՆԻ

## ԽԱՂԵՐ

**Այս խաղը կոչվում է «Ձկնորսը»:** *Խաղադաշտի երկու ծայրամասերի ամբողջ լայնքով գիծ են քաշում։ Խաղացողներից մեկին նշանակում են ձկնորս, իսկ մյուսներին հավասար փոքրիկ խմբերի բաժանում։ Խմբերը հավաքվում են դաշտի մի ծայրում և նրանցից ամեն մեկը իր համար գաղտնի ձկան անուն է ընտրում։ Կարող է պատահել, որ մի քանի խումբ նույն ձկան անունն ընտրեն։ Սա խաղն ավելի հետաքրքրական է դարձնում։*

*Խաղն սկսում է ձկնորսը։ Նա կանգնում է դաշտի կենտրոնում և սկսում է բարձրաձայն տալ ձկների անունները։ Ձկան անունը կրող խմբի անդամներն իրենց խմբի անունը լսելուն պես, արագ վազում են դեպի դաշտի մյուս սահմանը։ Ձկնորսն աշխատում է մինչև սահման հասնելը ձեռքով խփել նրանց։*

*Երբ 4—6 հոգի հավաքվում են, ձկնորսը նրանց կանգնեցնում է դաշտի կենտրոնում։ Նրանք բռնում են իրար ձեռքից և ցանց են կազմում։ Ձկնորսն անցնում է ցանցի ետևը և սկսում է տալ նախկին սահմանում մնացող ձկների անունները։ Այս անգամ էլ փախչող ձկներն անպայման մյուս սահմանը պետք է անցնեն ցանցի միջով, այսինքն կենտրոնի խաղացողների թևերի տակից։ Ձկնորսը նրանց կարող է խփել միայն ցանցից դուրս գալուց հետո։ Խփվածներն ավելանում են և ցանցը կամաց-կամաց մեծանում է։ Երբ մի սահմանից բոլոր խաղացողներն անցնում են մյուսը, կարող են իրենց անունները փոխել, նոր ձկների անուններ ընտրել և խաղը շարունակել։ Անհրաժեշտ է փոխել նաև ձկնորսին, որպեսզի չհոգնի։*

**Իսկ այս խաղը «Գազանների որս»:** *Խաղադաշտի երկու ծայրում, ամբողջ լայնությամբ առաջին խաղի նման գիծ են քաշում։ Երեք խաղացող դառնում են որսորդ, իսկ մյուսները հավասար թվով բաժանվում փոքրիկ խմբերի։ Խմբերը հավաքվում են դաշտի մի ծայրում և իրենց համար գաղտնի կերպով գազանների անուններ ընտրում։*

*Խաղն սկսում են որսորդները։ Նրանք միմյանց ձեռքից բռնած կանգնում են դաշտի կենտրոնում և սկսում կանչել։ Կանչվող գազանների անուններ կրող խմբերը սկսում են արագ վազքով անցնել մյուս սահմանը. որսորդներն առանց իրար ձեռք բաց թողնելու աշխատում են բռնել փախչողներին։ Բռնվողը՝ որսորդ է դառնում։ Երբ բոլոր խմբերը մի սահմանից տեղափոխվել են մյուս սահմանը, կրկին փոխում են իրենց անունները և խաղը շարունակում նույն ձևով։*

*Այն դեպքերում, երբ դժվար է լինում խմբերից մեկի կամ մի քանիսի անունները գտնել, որսորդները դիմում են տվյալ խմբերին, որ իրենց անունները բարձրաձայն հայտնեն և առանց խփվելու անցնեն մյուս սահմանը։ Որ խմբերից շատ խաղացողներ են մնում, այն խումբն էլ տանում է խաղը։*

ՎԱՐԴԱՆ ՎԱՐԴԱՆՅԱՆ

**Ով՝ ավելի արագ...** *Ջոկատի պիոներները կարգի բերին հրապարակը, հրապարակում շարեցին երեք սեղան ու սեղաններից ամեն մեկի վրա մեկական սպիտակ թերթիկ ու մատիտ դրեցին։ Ջոկատավար Համլիկը հրահանգեց, որ օղակները շարվեն։ Սեղաններից 15 քայլ հեռու մի գծի վրա շարվեցին։*

*— Երբ հրահանգ տամ,— ասաց ջոկատավարը,— օղակներից ամեն մեկի առաջին պիոները թող վազի և իր օղակի դիմացի սեղանի վրա դնի գլխարկը։ Երբ այդ պիոները վերադառնա և խփի երկրորդ խաղացողի ձեռքին, երկրորդը կգնա և կդնի վզկապը, ապա կգնա երրորդը և կդնի գոտին, չորրորդը՝ թաշկինակը, հինգերորդը՝ մայկան, վեցերորդը՝ պիջակը, յոթերորդը՝ հասնելով սեղանին կվերցնի մատիտը և թերթիկի վրա կգրի օղակի պիոներների անունները, իսկ նրանց դիմացը՝ թողած իրերի անունները։ Օրինակ՝ Խաչիկ՝ գլխարկ, Սուրիկ՝ վզկապ, Գագիկ՝ գոտի և այլն։*

*Իսկ օղակների վերջին պիոներները թող վազեն սեղանների մոտ և հավաքեն բոլոր իրերը և բերեն բաժանեն պիոներներին։ Այն օղակը, որը շուտ կհագնվի և կանոնավոր կերպով կշարվի, նա էլ կհաղթի։*

*Դուք էլ կարող եք խաղալ այսպես։*

Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

## ԽՆԴԻՐՆԵՐ



*Երեխաները հավաքվեցին ծառի ստվերում, ձեռքերին՝ թուղթ ու մատիտ։*

*— Թղթի վրա գծեցեք այս գծագիրը,— ասաց ընկեր Համլիկը։*

*Երեխաները կատարեցին։*

*— Այժմ փորձեցեք բաժանել չորս հավասար մասի, բայց այնպես, որ ամեն մի մասի մեջ լինի 25 ծաղիկ։ Ով ամենից շուտ և ճիշտ կատարի այս վարժությունը, նրան գիրք կնվիրեմ։*

*Գագիկն առաջինը կատարեց վարժությունը և ստացավ ընկեր Համլիկի նվերը։*

*Դուք էլ փորձեցեք։*





Այսպիսի մի տարածության եզրին իրար մոտ կանգնած էին Սուրիկն ու Խաչիկը։ Սուրիկն ասաց.

— Խաչի՛կ, արի ես այս, իսկ դու հակառակ կողմից սկսենք քայլել, այնպես, որ դու երկու քայլ առաջ գցիր, մի քայլ՝ ետ, իսկ ես երկու քայլ՝ ետ, մի քայլ առաջ։ Տեսնենք մեզանից ո՞վ շուտ կհասնի այս նույն տեղը։

Նրանք սկսեցին խաղը։ Երկուսն էլ համաչափ քայլերով էին առաջ գնում։

Որոշեցեք՝ Սուրի՞կը շուտ կհասնի իր ելման կետը, թե՞ Խաչիկը։





## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը՝ նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ


**„ПИОНЕР“**

№ 7

ЖУРНАЛ ДЛЯ ПИОНЕРОВ И ШКОЛЬНИКОВ

Орган ЦК ЛКСМ Армении

Год издания 23-ий, июль, 1951 г. Ереван





*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06*

*ՎՖ 03064, Պատվեր 407. Տիրաժ 5000. Տպագրական 2¼ մամուլ. Հեղինակային 2 մամուլ. 1 մամուլում 45.200 տպ. նիշ։ Արտադրության է հանձնված 13/VI—51 թ.։ Ստորագրված է տպագրության 6/VII—51 թ.*

*Հայպոլիգրաֆհրատմարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փ. № 65, 1951 թ.։*

ԳԻՆԸ 2 Ռ.

# ԵՐԳ ՃԱՆԱՊԱՐՀԻ

Խոսք՝ ԱԶՐՄԻՆԻ

Երաժշտություն՝ Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ

ՔԱՅԼԵՐԳԻ ՏԵՄՊՈՎ

Քեզ ող-ջո՜ւյն, հայ-րե-նի ըն-դու-թյուն, Մենք նո-րից ու դըր-կում ենք խըն-դում. Մեզ հա-մար դու հա-վետ հա-րա-զատ, Քեզ ող-ջո՜ւյն, մեր աշ-խարհ ծաղ-կա-զարդ, Մեզ հա-մար դու հա-վետ հա-րա-զատ, Քեզ ող-ջո՜ւյն մեր աշ-խարհ ծաղ-կա-զարդ, -զարդ.

1, 2, 3, 4. 5.

Քեզ ողջո՜ւյն, հայրենի լուսաբաց,
Մեր ձորեր, մեր սարեր վեհապանծ,
Լեռնային աղբյուրներ կարկաչուն,
Մեր գետեր, գետակներ, ձեզ ողջույն: } Կրկնել

Բնությո՛ւն, դու չքնաղ ես այնքան,
Բայց քեզնից չենք խնդրում ոչ մի բան,
Քո զարդերը կտաս դու նրան,
Ով մարտով է անցնում իր ճամփան: } Կրկնել

Պայքարով ամեն ժամ, ամեն օր,
Կբանանք գաղտնիքները բոլոր,
Գիտության բանալին մեր ձեռին՝
Կտիրենք քո բոլոր գանձերին: } Կրկնել

Քեզ ողջո՜ւյն, ո՜վ անտառ հովասուն,
Դու մեզ հետ մոր նման ես խոսում,
Ձեզ ողջույն, մեր դաշտեր բերքառատ,
Մեր գյուղեր նորաշեն ու [illegible] } Կրկնել